


*ՄԱՔՍ ՑԻՄՄԵՐԻՆԳ*
*(Գերմանական բանաստեղծ)*

*Նկ. Մ. ՏԻՐԱՏՈՒՐՅԱՆԻ*

Ես չեմ եղել երբեք Դամբարանում կարմիր,
Բայց տեսել եմ նրան քանի՜-քանի՜ անգամ,
Քայլում էր նա հպարտ նոր փողոցով անծիր,
Որպես մի շինարար, որպես պայծա՛ռ մի կամք:
Ես տեսել եմ, ինչպես նա կեղծ դատն էր ձեռքում,
Ինչպես դժվար ժամին կռվի հանում մարդկանց,
Ու բանվորին լսում ընդհատակի խորքում,
Հանքում լեռնագործին, որ փառքով է օծված:

Ես տեսել եմ նրան պիոներների մոտ,
Ե՛վ գեղջուկի համեստ, պարզ խրճիթում զվարթ,
Ե՛վ մայիսյան տոնի հոծ շարքերում խրոխտ,
Ե՛վ որպես նավապետ՝ ելած ծովերն ազատ:
Ես տեսել եմ նրան քաղաքներում, գյուղում,
Որտեղ ազատության դրոշն էր փողփողում,
Ով ստրո՛ւկ էր, քաղցած հանեց կռվի վերջին
Ու ցույց տվեց նրանց երջանկության ուղին:
Ստա՛լինի հետ մեկտեղ ես տեսել եմ նրան.
Խորհում էին սանձել հողմերը մոլեգին,

Մեծ Լենինն էր ուզում դարձնել աշխարհն արար,
Որպես կանա՜չ պարտեզ, որպես խաղաղ այգի:
Կարմիր Դամբարանում ես չեմ եղել երբեք,
Բայց տեսել եմ նրան քանի՜-քանի՜ անգամ,
Լենինն ո՛ւժ է, կորո՛վ: Ով տեսել է նրան՝
Նա դարձել է հզո՛ր, ուժե՛ղ, հաստատակա՛մ...

*Թարգմ. Հ. ՍԵՎԱՆ*



*Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*




№ 4

ԱՊՐԻԼ

1954 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 26-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

**Վ. Ի. ԼԵՆԻՆԸ 1879 թվականին, գիմնազիայի 1-ին դասարանի աշակերտ:**




# ՆՎԵՐԸ

ՀՌ. ՊՈՂՈՍՅԱՆ

Մանուկ Իլյիչին ծննդյան տոնին
Քույրը նվիրեց փոքրիկ շիկահավ,
Թռչնակը նստած վանդակի միջին,
Մանկանն էր նայում աչքերով խոնավ:

Թևերը ծալած, կարմրատոտիկ,
Կծկվել էր նա իր նեղ վանդակում,
Կարծես կիսաբաց կտուցով փոքրիկ
Նա ինչ որ տխուր գանգատ էր անում:

Իսկ դրսում արև ու կանաչ գարուն,
Օդումն էլ ազա՜տ ճախրող թռչուններ,
Մանուկը նայեց իր թշվառ գերուն,
Օ՜, պետք չի նրան այդպիսի նվեր:

Փոքրիկ ձեռքերով վանդակը գրկեց,
Դեպի դաշտ վազեց ծանոթ շավիղով,
Արագ շարժումով դռնակը բացեց
Եվ դուրս թողեց նա թռչնակին սիրով:

Ու վերև նայեց տղան շիկահեր,
Ապրիլյան տաքուկ արևը դեմքին,
Թռչունը ազատ թռավ դեպի վեր
Եվ հասավ կապո՜ւյտ, կապո՜ւյտ երկնքին:

Ի՜նչ լավ է սուրալ օդում անսահման,
Ներքևում թողած վանդակը նեղլիկ...
Ազատություն էր նվիրել նրան
Իր անմեղ ձեռքով մի խոհուն մանկիկ:



**Սիմբիրսկի այն տունը, որտեղ 1870 թվականից մինչև 1875 թվականը ապրել է Ուլյանովների ընտանիքը:**

# ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

1954 թվականի մարտի 14-ին տեղի ունեցան մեր իշխանության բարձրագույն օրգանի՝ Գերագույն Սովետի ընտրությունները: Այդ ընտրություններին մասնակցում էին մեր երկրի տասնութ տարեկանից բարձր բոլոր քաղաքացիները:

Մեր Գերագույն Սովետը բաղկացած է երկու պալատներից՝ Միության Սովետից և Ազգությունների Սովետից:

Սովետական Միության բոլոր ժողովուրդները՝ ռուսները, ուկրաինացիները, բելոռուսները, ադրբեջանցիները, հայերը, վրացիները, ղազախները և ուրիշներն իրավահավասար են, ունեն ընդհանուր շահեր ու ձգտումներ:

Մեր հայրենիքի ամեն մի քաղաքացի ձգտում է, որ աշխարհում խաղաղություն լինի, չծագի աշխարհամվեր նոր պատերազմ, մարդիկ ապրեն ուրախ և երջանիկ, մեր երկրում կառուցվեն նոր գործարաններ ու ֆաբրիկաներ, էլեկտրակայաններ, լուսավոր և գեղեցիկ դպրոցներ, բնակարաններ, կուլտուրայի տներ, պալատներ: Հենց սա էլ բխում է Սովետական Միության բոլոր ժողովուրդների շահերից. նրանք իրենց այդ շահերը պաշտպանելու համար ընտրում են դեպուտատներ Միության Սովետում: Սովետական Միությունում ապրող բազմաթիվ ազգություններից ամեն մեկը ունի նաև իր ազգային շահերը՝ լեզուն, կուլտուրան, կենցաղը, սովորությունները, պատմական անցյալը և այլն: Ազգությունների Սովետի դեպուտատները ներկայացնում են ժողովուրդների այդ շահերը:

Սովետական Միության Գերագույն Սովետի ընտրությունների այդ սիստեմը է՛լ ավելի է ուժեղացնում մեր երկրի ժողովուրդների համագործակցությունն ու բարեկամությունը:

Գերագույն Սովետի երկու պալատների ընտրությունները տեղի են ունենում միաժամանակ: Միության Սովետի դեպուտատները ընտրվում են ըստ ազգաբնակչության թվի՝ 300 հազար բնակչությունից մեկ դեպուտատ:

Այդպես չէ ընտրությունների կարգը Ազգությունների Սովետում: Անկախ բնակչության թվից միութենական ամեն մի ռեսպուբլիկա ընտրում է 25 դեպուտատ:

Եթե կապիտալիստական երկրների իշխանության բարձրագույն օրգանները ծառայում են կապիտալիստների ու կալվածատերերի օգտին, նրանց կազմում ընտրվում են այն մարդիկ, որոնք չեն ներկայացնում ժողովրդի շահերը, ապա մեզ մոտ ժողովուրդն է պետության տերը:

1954 թվականի մարտի 14-ին Սովետական Միության բարձրագույն օրգաններում ընտրվեցին Կոմունիստական պարտիայի ու կառավարության ղեկավարները: Ժողովուրդը ձայն տվեց իր լավագույն մարդկանց օգտին. ընտրվեցին բանվորներ և գյուղացիներ, գիտնականներ և գրողներ, ինժեներներ և բժիշկներ: Ընտրվեցին՝ անվանի վարպետ Ս. Զուտկինը, կոլտնտեսության նախագահ Ֆ. Գեներալովը, ակադեմիկոս Ա. Նեսմեյանովը, կրվորուհի Ա. Գարկովենկոն: Մեր ռեսպուբլիկայից դեպուտատներ են ընտրվել այնպիսի մարդիկ, ինչպիսիք են՝ բանվորուհի Ս. Առաքելյանը, մեքենավար Ս. Մատնիշյանը, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս, կոլտնտեսության նախագահ Ս. Կարապետյանը, ակադեմիկոս Վ. Համբարձումյանը, գրող Ստ. Զորյանը, ուսուցչուհի Վ. Դայանը և ուրիշները: Դրանք բոլորն էլ կոմունիստների և անկուսակցականների ժողովրդական բլոկի արժանավոր ներկայացուցիչներն են:

Սովետական ժողովուրդը երկրի բարձրագույն օրգանում ընտրելով իր լավագույն զավակներին, ձայն տվեց մեր Հայրենիքի հետագա ծաղկման ու բարգավաճման օգտին, կոմունիզմի լիակատար հաղթանակի օգտին:

1954 թվականի մարտի 14-ի ընտրությունների օրը դարձավ մեր երկրի աշխատավորների համաժողովրդական տոնը, Կոմունիստական պարտիայի, կառավարության և ժողովրդի միասնության նոր և հզոր ցույցը:



ՅՈՒ. ՄԱՐՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Երեխաները ցրվեցին, իսկ Վոլոդյան դասերից հետո մնաց պիոներական սենյակում, որ ջոկատի պատի թերթի համար գրած հոդվածը վերջացնի։ Այժմ արդեն հոդվածը պատրաստ է և պետք է որոշել՝ գնա՞ տուն դասերը սովորի, թե անցնի կայարան, որտեղ քայլող էքսկավատորի բարձած էշելոն էր ժամանել։

«Ո՛չ,— վճռեց Վոլոդյան։ — Ավելի լավ է դասերս պատրաստեմ, իսկ երեկոյան կըգնամ շինարարության ակումբը, որտեղ գուցե, հետաքրքիր կինոնկար ցուցադրեն»։

Պայուսակը թափահարելով Վոլոդյան դըպրոցի բակով քայլում էր դեպի ցածր ցանկապատը, որի հետևում էլ գտնվում էր իրենց տունը։ Հանկարծ նա կանգնեց։ Ցանկապատի մոտ, բարակ առվի եզրին, նստել էր նրա փոքրիկ քույրը՝ երեք տարեկան Լյուդկան։ Աղջիկը նստել էր հենց գետնին և աշխատում էր ավազով կտրել ջրի ճանապարհը։



Վոլոդյան գլխարկը ետ տվեց և քորեց շեկ գլուխը։

— Ինչո՞ւ ես ցեխի հետ խաղում,— բարկացավ Վոլոդյան։— Մա՛րշ դեպի տուն, դե, շո՛ւտ...

Լյուդկան հանգիստ նայեց եղբորն ու պատասխանեց.

— Չե՛մ...

— Ինչպե՞ս թե՝ չեմ։ Ուզում ես ծեծ ուտե՞լ։

— Ես ամբայտակ եմ կառուցում։

— Ինչպե՞ս թե ամբարտակ,—չհանդարտվեց Վոլոդյան։

— Ցի-լյանսկի։

Վոլոդյան գլխարկը ետ տվեց և քորեց շեկ գլուխը։

— Հը՜մ... ասում ես Ցիմլյանսկի, էլի՞։ Միայն թե հիմա ջուրը կքշի, կտանի քո ամբարտակը։

— Չի՛ քշի.— համոզված առարկեց Լյուդկան։

— Կտանի,— հանգիստ կրկնեց Վոլոդյան և պայուսակը գետին դնելով, նստեց վրան։

Վոլոդյան տուն չէր շտապում։ Գարնանային արևը իր ճառագայթներով թեթևաբար շոյում էր և հաճելի էր նստել ու շնչել թարմ կանաչի բուրմունքը։ Բայց Լյուդկային պետք էր տուն տանել, իսկ որպեսզի նա ձայն-ծըպտուն չհանի, ավելի լավ է սպասել մինչև ինքը համոզվի, թե իր արածը անմտություն է։

Ինչքան էլ որ առվակը փոքր լիներ, Լյուդկայի ամբարտակում բավականին ջուր հավաքվեց և հանկարծ, խորտակելով ավազե պատը, արագ թափով վազեց առաջ։

— Տեսա՞ր,— ուրախ բացագանչեց Վոլոդյան և ծիծաղեց։

Լյուդկան շփոթված նայեց ամբարտակի ավերակներին և քիթը վեր քաշեց։

— Ի-ինչո՞ւ քանդեց,— կմկմաց Լյուդկան

և սկսեց կեղտոտ ձեռքերով սրբել արցունքոտ աչքերը։

— Որովհետև նախ պետք է ջուրը ուրիշ հունով բաց թողնել։ Է՜յ, դո՛ւ...

Վոլոդյան գրպանից հանեց գրչահատը և սկսեց ջրի համար շրջանցող ճանապարհ փորել։ Լյուդկան դադարեցրեց լացը և երեսը ցեխով է՛լ ավելի սվաղելով, սկսեց ուշադիր հետևել իր եղբոր աշխատանքին։ Իսկ Վոլոդյան այնպես տարվեց, որ չնկատեց, թե ինչպես ինքն էլ ցեխոտեց իր պեպենոտ քիթը։

— Վազիր, այնտեղ դպրոցի հետևում ցեմենտ կա թափված, մի քիչ բեր,—հրամայեց Վոլոդյան և մի թերթ թուղթ մեկնեց Լյուդկային։

Մինչև Լյուդկայի ցեմենտ բերելը, Վոլոդյան փորեց շրջանցող ջրանցքը։ Հիմա արդեն ապագա ամբարտակի տեղ մի ջրափոսիկ էր միայն մնացել, որը կարելի էր հեշտությամբ չորացնել՝ ջուրը դուրս թափելով։

— Վոլոդյա՛, շեկլիկ սատանա,— բակ վազելով գոչեց Անդրյուշան, Վոլոդյայի սպիտակահեր դասընկերը,— որտե՞ղ ես չքացել։ Գալիս եմ տուն, մայրիկդ ասում է չի եկել, իսկ դու այստեղ նստել և ինչ-որ հիմարությամբ ես զբաղվում... Գնանք մեզ մոտ։ «Պիոների» նոր համար են բերել։ Գիտե՞ս ինչ հետաքրքիր է... Իսկ երեկոյան ակումբ կգնանք՝ «Երաժշտական պատմությունը» դիտելու։ Հիշո՞ւմ ես Լեմեշևը այնտեղ «Մետելիցան» ինչ լավ էր երգում. տրա-լա-լա՜...

— Ժամանակ չունեմ,— պատասխանեց Վոլոդյան և շարունակեց տրորել ցեմենտի և ավազի շաղախը։

— Ժամանակ չունե՞ս,— տարակուսանքով հարցրեց Անդրյուշան։ Դու ցեխո՞վ ես այդքան զբաղված։ Գոնե Լյուդկայից ամաչեիր։ Նրա հացն ես կտրում...

— Ամբարտակ եմ ուզում կառուցել... Ճի՛շտ իսկականի, մեր Ցիմլյանսկի պես, միայն թե փոքրը։

— Իսկապե՞ս... զարմացավ Անդրյուշան, իսկ հետո ավելացրեց.— Մեր ամբարտակի վրա, տես, ինչ ցցաթումբ է կանգնած։ Իսկ քոնը առանց արմատուրայի է... Ջրի ճնշմանը չի դիմանա։

— Ճիշտ է,— համաձայնեց Վոլոդյան և քորեց գլուխը։— Բա ինչպե՞ս անենք... Անդրյուշա՛, մի մտիր Վիտյայի մոտ և մետաղալար բեր։ Այդ էլեկտրիկի մոտ միշտ տարբեր տեսակի մետաղալարեր կարող ես գտնել։

Անդրյուշան ոչ միայն մետաղալար բերեց, այլև Վիտյային։ Սա նայեց Վոլոդյայի աշխատանքին, մտածեց և, լուրջ տեսք ընդունելով, ասաց.

— Ճիշտ է մտածված։ Միայն թե փոսորակը պետք է ավելի խոր փորել, որպեսզի ամբարտակի հիմքը ամուր լինի։

— Ճիշտ է,— համաձայնվեց Անդրյուշան։ — Տղանե՛ր, եկեք ամբարտակը միասին կառուցենք։ Դու, Վիտյա՛, մեր ինժեները կլինես։

— Ոչ մի ինժեներ,— առարկեց Վոլոդյան։ — Բոլորս էլ կաշխատենք։ Վիտյա՛, քո մետաղալարը տուր։

Աշխատանքը եռաց։ Լյուդկային մի կողմ քշեցին և, որպեսզի չխանգարի, թուղթ ու մատիտ տվին նրան։

Մի քանի ժամ հետո փոսորակը պատրաստ էր և նրա լայնքով պղնձե լարից ցցաթումբ էր կանգնեցված։ Այս ժամանակ Վիտյան ստիպված մի անգամ էլ տուն գնաց՝ մետաղալար բերելու։ Երբ արմատուրայի վերջին ձողը ամրացրին, Վիտյան ասաց.

— Էքսկավատորներն ու արմատուրագործները վերջացրին աշխատանքը։ Իսկ դու, Վոլոդյա՛, այժմ պետք է բետոնի գործարան դառնաս, իսկ ես՝ հողահան մեքենա, ամբարտակի մնացած մասը ավազից կմաքրեմ։

— Իսկ ե՞ս։

— Դու... Հը՜մ... Դու, Անդրյուշա՛, ՀԳՆԲ (հեղեղման գոտու նախապատրաստման բաժին) կլինես և ապագա Ցիմլյանսկի ծովի հատակը կմաքրես։ Չէ՞ որ պետք է բոլոր կոլտնտեսությունների ու մեքենա-տրակտորային կայանները նոր վայր փոխադրել։

Անդրյուշան բարեխղճորեն գործի լծվեց. նա սկսեց ապագա ծովի հատակից հավաքել մանր քարեր, թղթի կտորտանք և այլ աղտեղություններ, որոնք նա փոխադրում էր հենց ցանկապատի տակը։

Աշխատանքը ընդհատեց Վոլոդյայի մայրը։ Նա վրդոված թափահարում էր ձեռքերը և գոչում.

— Ամբողջ օրը չգիտես թե որտեղ է կորել: Հայրը եկել, չի ճաշում, սպասում է որդուն, իսկ սա բավական չէ ինքը ցեխակոլոլ է եղել, քրոջն էլ է կեղտոտել: Ա՜խ, դու իմ պատի՜ժ, պատի՜ժ...

— Մարո՛ւսյա մորաքույր...— փորձեց միջամտել Վիտյան: Բայց բարկացած մայրը կտրեց նրա խոսքը.

— Ի՞նչ Մարուսյա մորաքույր: Իսկ դու դեռ օղակավար ես: Փոխանակ օրինակ լինելու, ինքդ ես ցեխի մեջ մտել...



Նա երկար և ուշադիր դիտեց երեխաների աշխատանքը:

— Մամա՛, լավ էլի, հիմա կգամ,— թախանձում էր շփոթված Վոլոդյան:

— Դե, արա՛գ,— ասաց նա և վախեցած Լյուդկայի ձեռքը բռնած, գնաց տուն:

— Ոչինչ,— հանգստացնում էր Վոլոդյան տղաներին:— Ես հայրիկին կբացատրեմ, թե մենք ինչ ենք անում, նա չի բարկանա:

— Գնանք տուն,— առաջարկեց Վիտյան:— Ամեն ինչ թողնենք այսպես, իսկ վաղը, դասերից հետո կշարունակենք շինարարությունը:

— Իսկ կինո՞,— անվստահորեն հարցրեց Անդրյուշան:

— Ես կինո չեմ գնա,— պատասխանեց Վոլոդյան:— Դասերը չենք հասցնի պատրաստել:

— Ճիշտ է,— համաձայնվեց Վիտյան:

* * *

Մեծ դասամիջոցին Վիտյան, Վոլոդյան ու Անդրյուշան տղաներին ու աղջիկներին ցույց էին տալիս իրենց աշխատանքը: Վիտյան ասում էր.

— Ա՛յ, այստեղ պետք է հիդրոկայանի շենքը կառուցել: Իսկ ամբարտակը կերկարի մինչև ցանկապատը... Ներքևից էլ ջուրը կգնա թունելով: Եվ դեռ պետք է բարձրավոլտ հաղորդման գծերի համար հենակներ դնել:

— Ես էլ եմ ուզում կառուցել,— ոգևորվեց սևաչյա Կարինեն:

— Ե՛ս էլ, ե՛ս էլ,— լսվեց ամեն կողմից:

Անդրյուշան փորձեց առարկել Կարինեի մասնակցությանը. աղջիկ, այն էլ պատի թերթի նկարիչ, հարկավոր չէ: Բայց Վոլոդյան չհամաձայնվեց, իսկ Վիտյան ավելացրեց.

— Եկե՛ք մեր ամբողջ առաջին օղակով կառուցենք:

Առաջարկը դուր եկավ: Դասերից հետո տղաներն ու աղջիկները ցրվեցին իրենց տները նախաճաշելու և քիչ հետո էլ հավաքվեցին դպրոցի բակում: Օղակավար Վիտյային որոշեցին նշանակել շինարարության պետ: Նա բաժանեց պաշտոնները:

— Վոլոդյա՛՝ բետոնի գործարանում, Նյուրա՛՝ հողահան մեքենայի վրա, Սաի՛դ՝ քարտաշ...

— Իսկ դու պետք է միայն հրամայե՞ս,— հարցրեց Կարինեն:

— Ո՛չ: Ես համատեղության կարգով արմատուրագործ կլինեմ:

Աշխատում էին համերաշխ: Վոլոդյան բետոն էր պատրաստում, Վիտյան ամրացնում էր արմատուրան, Նյուրան ամբարտակը մաքրում էր ավազից. ատաղձագործության սիրահար Սաիդը փայտիկներից ու ֆաներայից կայանի շենքն էր պատրաստում, իսկ Կարինեն յուղաներկերն էր բացում՝ կառույցի վերջնական ձևավորման համար: Անդրյուշան և փոքրիկ Լյուդկան, որն ուզում էր իրեն էլ թույլ տան աշխատանքներին մասնակցելու, գլխավոր կառուցողների առանձին հանձնարարություններն էին կատարում:

Շինարարության պետին, երեխաները, մեկ դիմում էին հարցերով և մեկ էլ աշխատանքի

ընթացքի մասին հաղորդումներով։ Նյուրան կատակեց.

— Վոլոդյա՛, դու ո՞նց ես այդպես հեշտությամբ խոսում Վիտյայի հետ։ Չէ՞ որ քո բետոնի գործարանը մի քան կիլոմետր հեռու է շինարարության պետից։

— Նա սելեկտորով է խոսում,— պատասխանեց Վիտյան։ — Ես իսկական շինարարության պետի նման սելեկտորային կապ ունեմ կառույցի բոլոր տեղամասերի հետ։

***

Հիդրոհանգույցը կառուցվում էր։ Շինարարության վրա աշխատում էին ամեն օր։

Դպրոցի դիրեկտորը՝ Նիկոլայ Նիկոլայևիչը մի քանի անգամ դպրոցի բակի անկյունում նկատեց երեխաներին։ Երեկոյան տուն գնալիս, նա մոտեցավ ցանկապատին, երկար և ուշադիր դիտեց երեխաների աշխատանքը։

Հաջորդ օրը Նիկոլայ Նիկոլայևիչը առանձնասենյակից դուրս եկավ այն ժամանակ, երբ երեխաները աշխատում էին։ Նա մոտեցավ և, առանց կառուցողների կողմից նկատվելու, սկսեց հետևել նրանց աշխատանքին։

— Իսկ ջերմանավերը ինչպե՞ս պիտի իջնեն,— հանկարծ երեխաները լսեցին դպրոցի դիրեկտորի ձայնը։ — Պետք է ուղղակի ամբարտակի վրայո՞վ թռչեն։

Երեխաների այլայլումը երկար չտևեց։ Նրանք սկսեցին խոսել՝ իրար ընդհատելով։

— Ճի՛շտ է, շլյուզ է պետք։

— Եկեք շլյուզ կառուցենք։

— Իհարկե՛, պետք է կառուցել։

Վիտյան սկսեց Նիկոլայ Նիկոլայևիչի հետ խորհրդակցել, թե շլյուզը որտեղ ավելի լավ կլինի կառուցել։

— Ես կարծում եմ, ահա այստեղ։ Իսկ ավելի լավ կլինի, եթե դուք Վոլոդյայի հոր խորհրդին դիմեք։ Նա մասնագետ է, ինժեներ-հիդրոտեխնիկ, ինքը իսկական հիդրոհանգույց է կառուցում։ Նա մոտիկ տեղ էլ ապրում է և ձեր խնդիրքը չի մերժի։

— Ես հայրիկին կասեմ,— ուրախացավ Վոլոդյան։

— Եվ ընդհանրապես առանց նախագծի, իհարկե, դժվար է կառուցել,— շարունակեց դիրեկտորը։ Լավ կլիներ, եթե պիոներական սենյակից վերցնեիք ապագա հիդրոհանգույցի քարտեզը և կառուցեիք ճիշտ նրա պես։

— Այն քարտե՞զը, որ ես եմ նկարել,— հարցրեց Կարինեն։

— Այո,— պատասխանեց Նիկոլայ Նիկոլայևիչը։

***

Հիդրոհանգույցի մակետի հանդիսավոր բացմանը հավաքվել էին համարյա բոլոր աշակերտներն ու ուսուցիչները, եկել էին շատ ծնողներ։

Վերջին րոպեին Սաիդը ցանկապատին մի տախտակ մեխեց, որի վրա Կարինեն խոշոր տառերով գրեց.




Կարինեն խոշոր տառերով գրեց։

«Հիդրոհանգույցի մակետը կառուցել են Օլեգ Կոշևոյի անվան ջոկատի 1-ին օղակի պիոներները։ Օղակավար՝ Վիկտոր Մորոզով, օղակի անդամներ՝ Վլադիմիր Կորշունով, Կարինե Նուբարյան, Նյուրա Չերնովա, Սաիդ Օմարշաև, Անդրեյ Կորոլյով և նախադպրոցական՝ Լյուդմիլա Կորշունովա»։

Էքսկավատորավարներ Վիտյան ու Վոլոդյան փոքրիկ բահերով արագ քանդեցին պատնեշը և ջուրը գնաց։ Հավաքվածները ծափահարեցին։

Լյուդկան վազում էր ջրի հետ, որը գալարվելով և իր առջևից հավաքելով մանր տաշեղները, ձգտում էր դեպի ամբարտակ։ Ահա և ջուրը հոսեց փոքրիկ ավանի մոտից, լցրեց ծովի փոսորակը և, մի քիչ բարձրանալով, թափվեց ամբարտակի վրայից։

*Երկար ժամանակ երեխաները ցույց էին տալիս, թե ինչպես կայանի էներգիան լարերի միջոցով կհասնի քաղաքներին ու կոլտնտեսային դաշտերին:*

*Հյուրերը հետաքրքրությամբ լսում էին երեխաներին, հիանում նրանց աշխատանքով և գովում փոքրիկ կառուցողներին: Անգամ ջղային Մարուսյա մորաքույրը չկարողացավ զսպել իրեն ու բացագանչեց.*

*— Ախ դուք անիրավնե՜ր, ես էլ անընդհատ մտածում էի, թե սրանք ինչ են գտել այդ ցեխի մեջ:*

***

*Կառույց էին եկել Մոսկվայի արտիստները: Շինարարության պետի առանձնասենյակում նրանք խնդրեցին.*

*— Մենք ուզում ենք մինչև համերգը լինել շինարարությունում: Հնարավո՞ր է:*

*— Իհարկե՛, հնարավոր է,— պատասխանեց պետը:— Բայց ես ձեզ խորհուրդ կտայի նախքան տեղամասեր գնալը, անցնեիք մեր միջնակարգ դպրոցի բակը: Այնտեղ մեր հիդրոհանգույցի մակետն է: Դա ձեզ հետո կօգնի կողմնորոշվել իսկական շինարարական աշխատանքները տեսնելիս: Իսկ երեխաները լավ մակետ են կառուցել: Համարյա հիդրոհանգույցի ճիշտ պատճենն է: Անգամ նրանց խորհուրդներ է տվել մեր ինժեներներից մեկը:*

*Այդ օրվանից սովորություն դարձավ կառույցի բոլոր հյուրերին նախ ցույց տալ դըպրոցում եղած մակետը, իսկ հետո առաջնորդել տեղամասերը:*

# ՄՈՒՔԵԼ ՔԵՌԻՆ

*Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆ*

*Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ*

Ավտոն բարձած կարմիր քարով,
Երկար ու լայն ճանապարհով
Սլանում է Մուքել քեռին...
Կանգնում է նա գյուղի ծայրին:



— Հեռո՜ւ, հեռու, երեխաներ...
— Հը՛, ինչպե՞ս եք, քեռի՛ Մուքել:
— Կամաց-կամաց,— ասում է նա,
Կարճ է խոսում, որ չուշանա:
Մանուկները մոտն են գալիս,
Խոսեցնում են, հարցեր տալիս:
— Գործդ լա՞վ է, Մուքել քեռի՛:
— Երեկ ինչքա՜ն շատ քար բերիր:
— Թերթում այսօր գովել են քեզ:
— Քեռի՛, ավտո նստեցրու մեզ:
Արամն էլ շատ է զարմանում.
— Պա՜հ, այսքան քարն ի՞նչ են անում
Շտապ-շտապ Մուքել քեռին
Բացատրում է փոքրիկներին.
— Ֆերմայի գոմ պիտի շինենք,
Ծխախոտի մեծ չորանոց,
Պիտի մարագը նորոգենք,
Եվ կառուցենք նոր թռչնանոց...
Դատարկում է քարն ու արագ
Սլանում է նորից քարհանք:
Աշխատասեր Մուքել քեռուն
Մանուկները շատ են սիրում:

Ա. ՍԵԿՈՅԱՆ

# ՓՈՐՁԱԴԱՇՏԸ

Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ

1

*Այդ ձմեռ այնքան շատ ձյուն եկավ, որ երեխաները մտածում էին, թե մինչև մայիս գարուն չի բացվի: Բայց ինչպես միշտ, մարտի վերջերին փչեցին գարնան տաք քամիները, հողն սկսեց ազատվել ձյունից ու խորը շնչել: Բոլորի համար անսպասելի ծառերի լցված ու խոնավ բողբոջները սկսեցին պայթել՝ բացելով իրենց ճերմակ, բաց կանաչ ու վարդագույն աչիկները:*

*Հենց այդ օրերին էր, որ բնագիտության դասատու ընկեր Համիկը երեխաներով շրջապատված մոտավ պատանի միչուրինականներին հատկացված հողամասը: Ուսուցչուհին աշխատանքի բաժանում կատարեց նրանց մեջ: Նրանք մեծ եռանդով երկու օրում փորեցին ու մարգերի բաժանեցին այդ հողամասը: Սրա կողքից ուրախ աղմուկով անցնում էր Կաթնաղբյուր գետը...*

*Այնուհետև աշակերտներն անհամբեր սպասում էին, թե վերջապես ե՞րբ պետք է ցանեին այդ հիանալի ու բազմատեսակ սերմերը, որ ընկեր Համիկը ձեռք էր բերել հարևան կոլտնտեսություններից և անգամ տարբեր ռեսպուբլիկաներից՝ նամակների միջոցով:*

*— Ընկե՛ր Համիկ, ախր բոլոր ծառերն էլ ծաղկեցին:*

*— Մեր փորձադաշտի տնկիներն էլ են ծաղկել,— ուսուցչուհուն էին դիմում միչուրինականները:*

*Ուսուցչուհին ինչ-որ մտածումների մեջ էր: Նա լսում էր երեխաներին ու նայում հեռուն:*

*— Ինձ համար էլ դժվար է համբերելը, երեխանե՛ր, բայց նայեք,— ցույց տալով դիմացի լեռները, որոնք մինչև լանջերը ձյունով էին ծածկված, ասաց նա:— Մի քանի օր էլ որ արևը տաքացնի, ուժեղ ձընհալ կսկսվի: Իսկ դուք շատ լավ գիտեք, թե ինչպես է հորդանում Կաթնաղբյուրը, մեր փորձադաշտը չփչացնի՞:— Փոքր ինչ մտածելուց հետո իր սովորական զվարթ տոնով ասաց.— Ոչինչ, սկսենք:*

2

*Անցել էր մի շաբաթ: Գիշեր էր: Դեռևս ճաշից հետո սկսած գարնանային անձրևը շարունակվում էր: Դեմքը հպած լուսամուտի ապակուն՝ Արամը նայում էր դուրս:*



Նրանք սկսեցին ջրի տակից քարեր հանել և շպրտել քանդվող տեղը:

*Մտնելով անկողին Արամը երկար ժամանակ շուռ ու մուռ էր գալիս տեղում և մտածում. ճի՛շտ էր ընկեր Համիկը: Իզուր շտապեցին: Գետակը կհորդանա, ջուրը կողողի փորձադաշտը ու կքշի, կտանի նոր ցանված սերմերը, մատղաշ տնկիները...*

*Այլևս չհամբերելով՝ Արամն զգույշ ելավ անկողնուց, անաղմուկ հագնվեց, վերցրեց լապտերը և տնեցիներից գաղտնի դուրս եկավ:*

*Ամբողջ գյուղը մթության մեջ լողանում էր անձրևի տակ: Արամը քայլերն ուղղեց դեպի փորձադաշտ: Մի պահ տղան կանգ առավ: Իսկ ի՞նչ կարող էր անել ինքը միայնակ... Առանց երկար տատանվելու, նա*

*թեքեց ճանապարհը դեպի իր ընկերներից մեկի՝ Կարենենց տան կողմը։*

*Արամը մի քանի անգամ թակեց ընկերոջ լուսամուտը, բայց ներսից չէին լսում։ Երբ տղան ցանկացավ անցնել դեպի դուռը, մի ձայն պահեց նրան։*

*— Հե՜յ, ո՞վ է։*

*Արամը սպասեց։ Հարցնողը մթության միջից լապտերով իրեն էր մոտենում։*

*— Կարե՜ն,— ընկերոջը ճանաչելով՝ ուրախացած բացագանչեց Արամը։*

*— Լսի՛ր, հողամասից եմ գալիս... պատնեշի մեջտեղը փլված է... մի երկու քար ընկել էր արդեն։ Եկա բահ վերցնելու,— թաց երեսը սրբելով՝ արագ խոսում էր Կարենը.— Աշոտին ու Վահագին էլ արթնացրի։*

*Քիչ հետո լապտերներն առաջ պահած, բահերն ուսերին՝ տղաներն շտապում էին դեպի հողամաս։*

*— Եթե նրանք էլ հասնեն, գործը կհեշտանա,— հասակավոր մարդու լրջությամբ խոսում էր Կարենը։*

*Տղաներն իրենց ծանոթ ու նեղլիկ ճանապարհով ցած իջան։ Գետը բավականին բարձրացել էր և ծածկել արահետի շարունակությունը։ Նրանք ստիպված սկսեցին քայլել ընդհանուր ճանապարհով։*

*Վերջապես երևաց հողամասը։ Լապտերները բարձրացնելով Կարենն ու Արամը տեսան, որ մարգերը լիքն էին ջրով, բայց կարծես թե դա գետի ջուրը չլիներ։*

*— Միքի՛չ էլ բարձրանանք,— առաջ ընկնելով կարգադրեց Կարենը։*

*Նրանց ոտքերն սկսեցին խորը թաղվել թանձր ցեխի մեջ։*

*— Հենց սա է, նայի՛ր,—գոռաց Կարենը։*

*Իսկապես, ջրի մի լայն շերտ քանդելով պատնեշը, աղմուկով լցվում էր ներս։ Տղաները պատնեշին դնելով լապտերները, սկըսեցին քարեր որոնել։ Գնալով նրանց գործը դժվարանում էր. հորդացող ջրի հոսանքը քշում էր և նրանց նետած քարերը։*

*— Հե՜յ,— վերևից լսվեց մի ձայն։*

*Նրանք բարձրացրին գլուխները. վերևում՝ ձորաբերանին միքանի լապտերներ էին շարժվում։*

*— Նրա՞նք են,— ուրախացած բացագանչեց Կարենը և սկսեց ճոճել լապտերը։— Ի՜նչ լավ ժամանակին եկան։*

*Վերևում՝ սև մթության մեջ, մի պահ լապտերները համախմբվեցին, ապա երկար շարք կազմելով՝ սկսեցին ցած սահել։ Այլևս ի՞նչը կարող էր նրանց վախեցնել։ Պատնեշի վրա շարելով լապտերները, նրանք սկսեցին ջրի տակից քարեր հանել և շպրտել քանդվող տեղը։ Բայց բացվածքն ավելի էր լայնանում։*

*— Գնամ մարդիկ կանչեմ,— հուսահատված ասաց Արամը։*

*— Ո՛չ, պետք չի,— միանգամից պատասխանեց Կարենը։—Մենք ինքներս պետք է անենք։*

*Եվ իր մեջ խեղդելով վախի, հուսահատության զգացումը, ինքն սկսեց ավելի խոշոր քարեր հանել ջրի տակից։ Նա շատ լավ էր զգում, որ ջրի սառնությունը հասնում էր մինչև ոսկորները, սակայն ընկերներին ոգևորելու համար ավելի լավ էր աշխատում։ Մյուսներն էլ հետևեցին նրան։ Նետած քարերն այլևս չէին շարժվում, և ջուրն ավելի նվազ շիթերով էր ներս սողում։*

*Վերջապես տղաներն ուղղեցին մեջքները և սկսեցին նույնիսկ ծիծաղել իրար վրա։*

*— Մի Աշոտի երեսին նայե՛ք, աչքերը չեն երևում ցեխի միջից...*

*— Իսկ քո քիթը...*

*Կրկին անգամ ստուգելով և համոզվելով, որ պատնեշի մնացած մասերը կարող էին դիմանալ մինչև լուսաբաց, տղաները բռնեցին գյուղ տանող ճանապարհը։*

## 3

*Հաջորդ օրը գիշերվա դեպքի մասին խոսում էին ոչ միայն դպրոցում, այլև ամբողջ գյուղում։ Բայց և որքան եղավ պիոներների տխրությունը, երբ մինչև վերջն էլ չերևաց Կարենը։ Դասերից հետո մի մեծ խումբ երեխաներ եկան Կարենենց տուն։ Երբ նրանք ներս մտան, Կարենը մի կողմ շպրտեց վերմակը, որպեսզի ընկերներն իրեն պառկած չտեսնեին։ Սակայն մայրն անմիջապես պառկեցրեց նրան. բոլորն էլ պարզ տեսնում էին, որ տաքությունից կարմրել, արյունով էին լցվել նրա աչքերը։*

— Ես հիվանդ չեմ, ճի՛շտ եմ ասում,— խզված ձայնով ասաց նա։

Ինկապես, նա մոռացավ ամբողջ մարմնի ուժեղ ցավը, տաքությունը, երբ իր մոտ տեսավ ընկերներին։

Իսկ երբ երեկոյան այդտեղ եկավ ընկեր Համբիկը, նա այլևս չկարողացավ բացել աչքերը. տաքությունն ավելի էր բարձրացել... Ուսուցչուհին երկար ժամանակ լուռ նստեց նրա մահճակալի առջև, ձեռքը դրեց նրա ճակատին և գլուխն օրորելով դուրս եկավ։

***

Գարնանային տաք առավոտ էր։ Կարենն իր անվարժ քայլերով գնում էր դեպի ձորափ. նա գիտեր, որ կիրակի օրն անպայման երեխաներ կլինեին փորձադաշտում։ Ձորափում կանաչ, ծաղկազարդ մի պարտեզ էր ձգվում։ Պատնեշի երկարությամբ շարված ջահել տնկիններն այնպես փարթամորեն էին թփակալվել, որ հատ ու կենտ մնացած ծաղիկները համարյա չէին երևում։ Մեղմ զովն այդ կողմից բերում էր կանաչի ու բազմաթիվ ծաղիկների անուշ բուրմունքը։ Կարենն արագացրեց քայլերը։ Փորձադաշտը լիքն էր երեխաներով. բոլորն էլ ինչ-որ զբաղված էին, շտապում էին, աշխատանք էին խնդրում, կարգադրություն էին անում։ Կարենը նկատեց, որ այդտեղ ոչ միայն միչուրինականներն էին, այլև բարձր դասարանցիները. հավանաբար նրանք էլ ղեկավարում էին աշխատանքները։

Այդտեղ էին և ուսուցիչները։ Կարենը մի խոր ցավ զգաց հոգում. բոլորն աշխատել են, բացի իրենից...

— Կարե՛նը,— ասաց մի երեխա, որ սածիլները փոխադրելիս նկատել էր նրան։ Մի քանիսը վազեցին և շրջապատեցին նրան։



— Կարե՛նը,— ասաց մի երեխա...

— Ինչպե՞ս ես, լավացե՞լ ես...

— Շուտ չե՞ս վեր կացել...

— Տես ի՛նչ է դառել մեր փորձադաշտը...

Իրոք, փորձադաշտը երեխաների աշխատանքի շնորհիվ հիանալի տեսք էր ստացել։ Այնտեղ շարունակվում էր եռուն աշխատանքը։

## ՁՆԾԱՂԻԿԸ

ՎԱՀԱԳՆ ԴԱՎԹՅԱՆ

Գարնան առաջին
Նուրբ ծաղիկն եմ ես,
Ճերմակ թերթերով
Ձնծաղիկն եմ ես:
Քնած էի ես,
Քնած հողի տակ
Վրաս պաղ ձյունի
Ծածկոցն սպիտակ:
Սակայն լսեցի
Հողի տակ փխրուն,
Որ գարնան համար
Դուք շատ եք տխրում,
Որ կարոտել եք
Կանաչ մարգերին,
Խենթ առվակների
Ուրախ երգերին:
Որ կարոտել եք
Ծաղկին ու ծառին,
Կապույտ երկնքում
Ճախրող ծիծառին:
Ու ես զարթնեցի
Փափուկ հողի տակ
Պատռեցի ձյունի
Ծածկոցն սպիտակ,
Ու թարմ բուրմունքով
Իմ նուրբ թերթերի,
Այս կանա՜չ, կանա՜չ
Գարունը բերի...

# ՓՈՔՐԻԿ ԾԱՌԻ ԵՐԿՅՈՒՂԸ

ՍԵՐԻՆԵ

Նկ. Շ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԻ

— Ո՜ւո՜ւ,— փչում էր քամին և ցած թափում ծառերի ճյուղերի վրա նստած ձյունը։

— Չը՛թ, չը՛թ,— բոցկլտում էր փայտը վառարանում և հաճելի ջերմություն տարածում սենյակում։

Մաքուր սփռոցով ծածկված սեղանի շուրջը ուրախ ճաշում էին ընտանիքի անդամները։

Թը՜ռ, օդում շրջան գործելով, իրար հետևից եկան մի խումբ ծիտիկներ և շարքով նստեցին բակի անկյունում գտնվող փոքրիկ խնձորենու մերկ ճյուղին։



— Ծի՛կ, ծի՛կ, ցուրտ է,— տխրագին ասաց մի ծիտ։

— Ծի՛կ, ծի՛վ, սոված եմ,— գանգատվեց մյուսը։

— Ճի՛կ, ճի՛շ, ճի՛շտ է, սոված ենք,— արձագանքեցին բոլորը միասին։

Երբ մայրիկը հավաքում էր ճաշասեղանը, փոքրիկ աղջիկը գդալով իր ափսեի մեջ լցրեց մյուս ափսեներում մնացած ճաշի ավելցուկներն ու սեղանի վրա թափված հացի փշրանքները։ Այդ բոլորը նա դուրս տարավ և դրեց պատշգամբի սյունին ամրացված տախտակի վրա։

— Ճի՛կ, ճի՛կ, ճաշ,— ծլվլացին ծիտիկները և թը՜ռ թռան ու հավաքվեցին փոքրիկ աղջկա պատրաստած ճաշասեղանի շուրջը։

Տաս րոպե հետո կշտացած ծիտիկները նորից նստած էին խնձորենու մերկ ճյուղին։

— Ծի՛կ, ծի՛կ, սիրելի խնձորենի,— ծըլվըլում էին նրանք,— ե՞րբ ես բացելու քո փարթամ տերևները։

— Ե-ս-ս,— սվսվաց փոքրիկ խնձորենին,— անընդհատ ուռճացնում եմ կոկոններս։ Հենց որ մեղմանան եղանակները, նոր դալար ընձյուղներ, տերևիկներ ու վարդագույն ծաղիկներ կարձակեմ։ Բայց ի՞նչ օգուտ, երբ ես վախենում եմ...

— Ինչի՞ց ես վախենում, թրթուրների՞ց,— հարցրին ծիտիկները,— մենք նրանց կոտցահարելու ենք. մի հատ էլ չենք թողնի։

— Չէ՜,— տարուբերեց իր ճյուղերը խընձորենին,— գիտեմ... ես վախենում եմ երեխաներից։

— Ճի՛կ, չէ, երեխաներից չպետք է վախենալ. նրանք այնքան, այնքա՜ն բարի են,— սկսեցին հակաճառել ծիտիկները։

— Բայց մեր բակում կա մեկը, որն անցյալ գարնան իմ նրբին ճյուղերը ջարդելով զվարճանում էր, իսկ հետո էլ քարերով ցած թափեց վերևի ճյուղերից կախված կանաչ պտուղները։ Այդ տղան սպանեց նաև մի դեղնակտուց ծիտիկ, որին հայրն ու մայրը վարժեցնում էին առաջին թռիչքին։

— Ճի՛կ, ճի՛շ, ճի՛շտ է, այդպիսի մի բան ես էլ եմ հիշում,— ասաց պառավ ճնճղուկը։

— Իսկ դուք ինչո՞ւ այդ մասին չհայտնեցիք թռչունների և ծառերի բարեկամներին,— ասացին մյուս ծիտիկները.— թող նրանք իմանան անկարգ տղայի մասին։

— Բայց, ես տեղիցս շարժվել չեմ կարող,— հուսահատ, ճյուղերը փոքր ինչ շարժելով ասաց խնձորենին։— Նա, այդ երեխան հենց այսօր կոտրեց իմ մի մատնաչափ հաստությամբ ճյուղը և նրանով մաքրեց իր կրկնակոշիկի ծայրին կպած ցեխը։ Ես այդ մասին ոչ մի տեղ չեմ կարող հայտնել։

— Ճի՛կ, ճի՛կ, ճի՛կ, եկեք մենք գնանք ու այդ մասին հայտնենք,— ծլվլացին ծիտիկները և թը՜ռ, թռան տարբեր ուղղություններով։

# ԾՈՒՅԼԸ

*ԱՐ. ԱՅՎԱԶՅԱՆ*

Փողոց է գնում
Շուշն իր հետ տանում.
Երբ գալիս է տուն,
Ընկերն է կատուն:
Դեռ իր շորերը
Չի հագել լրիվ,
Նա ոտաբոբիկ,
Մազերը խռիվ.
Փոքրիկ փիսիկին
Իր մոտ է կանչում
Ու նրան տանջում,
Այսպես պահանջում.
— Փիսի՛կ, լվացվիր,—
Կատուն լուռ լսում,



Թաթիկն է կամաց
Երեսին քսում:
— Անլվա է միշտ
Շնիկը հիմար,
Օրինակ եղիր
Դու նրա համար:
Բայց թե փիսիկը
Լեզու ունենար,
Իսկույն խոսքերն այս
Կգտներ համար:
— Ոչ թե շնիկն է, —
Փիսիկը կասեր,—
Այլ Հրաչիկն է
Ծույլ, անամոթ ասեր...

---



# ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ, ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ, ՕՂԱԿՆԵՐՈՒՄ



## ՄԱՆԿԱՏԱՆ ՍԱՆԵՐԸ

*Դ. ԴԱԼՋՅԱՆ*

*Ֆոտո՝ Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ*

*Երեկո էր: Աղջիկները վաղուց պատրաստել էին իրենց հաջորդ օրվա դասերը: Այժմ հավաքված մանկատան խնամքով կահավորված սենյակներում զրուցում էին, պատմում օրվա հետաքրքիր դեպքերի մասին: Նրանց մեջ էր նաև 12-ամյա Արևիկը, որը աղջիկներից առանձնացած նստել կարում էր իր վերնազգեստի կոճակները: Հանկարծ նա ցնցվեց և նայեց շուրջը, տեսնելով, որ ընկերուհիները առանց նայելու իր կողմը, նորից զրուցում են, նա լռությամբ շարունակեց կարել: Քիչ անց նա նորից ցնցվեց: Աղջիկներից մեկը, որն ավելի մոտ էր նստած նրան, նկատեց այդ և հարցրեց.*

*— Այդ ի՞նչ պատահեց, Արևի՛կ:*

*— Ոչինչ, ասեղով մատս ծակեցի,— ամոթ զգալով պատասխանեց Արևիկը:*

*Սենյակում հավաքված բոլոր աղջիկները սկսեցին ծիծաղել:*

*— Ինչ է, մի կոճա՞կ էլ չես կարողանում կարել,— ասաց նրանցից մեկը:*

*Ծիծաղը սաստկացավ:*

*— Իսկ ինչո՞ւ եք ծիծաղում, աղջիկներ, չէ՞ որ նա փոքր է և կարել չգիտի, միջամտեց 9-րդ դասարանի աշակերտուհի Մարգո Օհանյանը,— լավ կլինի նրան սովորեցնել, ոչ թե ծիծաղել:*

*Աղջիկները մի փոքր լռեցին: Մարգոն շարունակեց.*

*— Արևիկ, դու մի՛ հուզվիր, ուզում ես քեզ կսովորեցնեմ ձեռագործ անել, այն ժա-*

մանակ դու կկարողանաս գործել, կարել և ասեղն էլ այլևս քո մատները չի ծակի։

Արևիկն ուրախացավ։ Այդ ժամանակ աղջիկները բոլորն էլ հավաքվեցին Մարգոյի շուրջը և խնդրեցին նրան, որ իրենց էլ սովորեցնի։ Մարգոն համաձայնվեց։

Քանաքեռի մանկական քաղաքի բոլոր երեխաները ճանաչում են Մարգո Օհանյանին։ Նա թուխ մազերով, գեղեցիկ աչքերով



Երեխաներն աշխատանքի ժամին։

մի աղջիկ է, հրաշալի ասեղնագործող։ Երբ մանկատան աղջիկները խնդրեցին, որ նա իրենց ասեղնագործ սովորեցնի, Մարգոն սիրով ընդունեց այդ առաջարկը։ Նա կազմեց 30 հոգուց բաղկացած մի խմբակ։ Մարգոյի եռանդուն աշխատանքի շնորհիվ կարճ ժամանակում աղջիկները սկսեցին գործել սովորել։ Արևիկ Զաքարյանը դարձավ խմբի լավագույն գործողներից մեկը։ Դավթյան Զարիկը, Նավոյան Սիրունը և ուրիշները աչքի են ընկնում իրենց նուրբ ու ճաշակով աշխատանք կատարելու ընդունակությամբ։

Երբ ներս ես մտնում մանկատան սենյակները, տեսնում ես նրանց նուրբ աշխատանքը։ Կահավորված և մաքուր սենյակների դռներից ու պատուհաններից կախված են վարագույրներ և պատերին փակցված են կտավի վրա գործած զանազան նկարներ։ Բայց աղջիկները միայն իրենց սենյակները չեն զարդարում։ Տղաների սենյակում էլ կըտեսնենք ճիշտ նույնանման գործվածքներ։ Մանկատանը գործում են նաև ուրիշ խմբակներ, որոնց ղեկավարներն են մանկավարժներ Հ. Բաղրամյանը, Գ. Գասպարյանը, Ս. Խաչատրյանը։ Նրանք իրենց ուժն ու կարողությունը չեն խնայում սաների դաստիարակման ու կրթության գործի համար։ Մանկատանը գործում է կարի ու ձևի խմբակ, որի ղեկավարն է մանկավարժ Էլիզա Համբարձումյանը։ Խմբակում ընդգրկված են 40 աղջիկ։ Նրանք այստեղ սովորում են կարել ու ձևել։

Պիոներական դրուժինայի խորհուրդը նախապատրաստվում էր երեկույթի. անհրաժեշտ էր բոլոր աղջիկների համար կարել միատեսակ մետաքսե զգեստներ, իսկ տղաների համար՝ վերնաշապիկներ։ Դրուժինայի խորհուրդը որոշեց, որ այդ զգեստները կարեն հենց իրենց մանկատանը գործող կարի ու ձևի խմբակի անդամները։ Մի քանի օրվա ընթացքում խմբակի անդամները կարեցին զգեստներն ու վերնաշապիկները։

Բայց տղաները ետ չեն մնում նրանցից։ Նրանք էլ աղջիկների համար կոշիկներ են կարում։ Տղաների մեծ մասը մասնակցում է կոշիկի վերանորոգման արհեստանոցի պարապմունքներին։ Նույն երեկույթի համար անհրաժեշտ էին սպիտակ կաշվից չստեր։ Տղաները երկու օրում մանկատան բոլոր սաների համար գեղեցիկ սպիտակ չստեր կարեցին։ Վարպետ Երվանդ Նիկողոսյանը միշտ գոհունակությամբ է խոսում իր աշակերտների մասին։

— Գիտե՞ք ինչ տղաներ են... Ամբողջ մանկատանը չեք գտնի մեկին, որ կոշիկի կարիք զգա։ Նրանք իրենք են վերանորոգում կամ կարում սաների կոշիկները։

Երկու ամիս առաջ մանկատունը շահագործման հանձնեց իր մեծ ու լուսավոր դահլիճը։ Այդ կապակցությամբ մեծ երեկույթ

եղավ։ Մասնակցում էին մանկատան նվագախումբը, երգի և այլ ինքնագործ խմբերը։

Ահա բեմի վրա երևում է մի աղջիկ։ Նա հագել է գեղեցիկ մետաքսե շոր։ Նրա երկար հյուսերին ասեղնագործած ժապավեն է կապած, ոտքերին սպիտակ չստեր կան։ Նրան հաջորդում են մյուսները...

Ուրախ ու հետաքրքիր է Քանաքեռի մանկական քաղաքի սաների առօրյան։

Նրանք սովորում են Քանաքեռի միջնակարգ դպրոցում. շատերն ուսման առաջավորներ են և սիրով մասնակցում են մանկատանը գործող ֆիզիկայի, գրականության և այլ խմբակների պարապմունքներին, հարստացնում են իրենց գիտելիքները։ Այստեղ նրանք սովորում են, պատրաստվում դառնալու զարգացած սովետական քաղաքացիներ։



Ձեռագործի խմբակի անդամները ասեղնագործելիս:

# ԻՄ ՌԵԺԻՄԸ

Դա անցյալ տարի էր: Մեր ջոկատի պիոներներից երեքը քննությունները հանձնեցին անհաջող և մնացին նույն դասարանում: Դրա պատճառն այն էր, որ մենք տարվա ընթացքում չէինք օգնում մեր ընկերներին: Ռ. Աղամյանը, Է. Հարությունյանը և Օ. Խաչատրյանը հաճախ բացակայում էին դասերից, չէին պատրաստում իրենց տնային հանձնարարությունները և ամբողջ օրը տարված էին խաղով. քննություններին էլ չնախապատրաստվեցին:

Այս ուսումնական տարվա սկզբից որոշեցինք չունենալ ոչ մի երկտարեցի: Մենք օգնում ենք ետ մնացողներին և գիտենք, որ քննություններին լավ նախապատրաստվելը կախված է նաև օրվա ռեժիմը ճիշտ օգտագործելուց:

Օրինակ՝ ես ամբողջ տարվա ընթացքում աշխատել եմ ռեժիմով: Չի եղել այնպիսի օր, որ դասերս պատրաստելու հաշվին ուրիշ գործով զբաղվեմ: Իսկ հիմա, քննությունների նախօրյակին, ես ավելի խստորեն եմ հետևում ռեժիմին: Ավելի շատ ժամանակ եմ հատկացնում կրկնությանը: Ես գիտեմ, որ հիմա, ինչքան շատ և լավ աշխատեմ, ամառն այնքան ուրախ կանցկացնեմ:

ՇՈՎԻԿ ԳԵՎՈՐԳՅԱՆ

*(Լենինականի № 6 դպրոցի 6-րդ դաս. աշակերտուհի)*

# ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԳՐԱԴԱՐԱՆԻՆ

Ջոկատի խորհրդի նիստում մենք որոշեցինք օգնել գրադարանին: Հաջորդ օրը, դասերից հետո, գնացինք գրադարան՝ գրքերը վերանորոգելու: Վալտերը և Արտավազդը վերանորոգում էին գրքերի կազմերը, իսկ Արտեմը, Ժիրայրը և ուրիշները սոսնձում էին պատռված տեղերը: Գրքերը վերանորոգելուց հետո մենք վերադարձանք տուն: Մեզնից յուրաքանչյուրը գիտակցում է, որ գրքերը մաքուր պետք է պահել, քանի որ այդ գրքերից օգտվում է ոչ միայն մեկը, այլև ամբողջ դպրոցի աշակերտությունը:

Ռուս հանճարեղ գրող Մաքսիմ Գորկին ասել է «Սիրեցեք գիրքը, գիտելիքների աղբյուրը»: Մենք սիրով ենք կատարում մեծ գրողի խորհուրդը:

ՀԵՆՐԻԿ ՄՈՒՐԱԴՅԱՆ

*(Երևանի Ս. Սպանդարյանի անվան դպրոցի 4-րդ ջոկատի 2-րդ օղակի օղակավար)*




(Ա. ԴՎՈՐԺԱԿԻ ՄԱՀՎԱՆ 50 ՏԱՐԻՆ)

Յ. ԲՐՈՒՏՅԱՆ
(Արվեստագիտության թեկնածու)

Նկ. Ա. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

1890 թվականի փետրվարին Մոսկվայի թերթերից մեկը գրում էր. «Մոսկվայում հյուրընկալում է նշանավոր չեխ կոմպոզիտոր Անտոնին Դվորժակը: Ուրբաթ օրը Ա. Դվորժակը հանդես կգա հասարակության առաջ ռուսական երաժշտական ընկերության Մոսկվայի բաժանմունքի սիմֆոնիկ համերգում՝ որպես դիրիժյոր»:



Եվ այդպես, սկզբում Մոսկվայում, իսկ այնուհետև՝ Պետերբուրգում կայացած համերգներում Դվորժակը ղեկավարում է իր մի շարք ստեղծագործությունները: Ռուս հասարակությունը մեծ սիրով է ընդունում հռչակավոր չեխ երաժշտին: Դվորժակի և ռուս նշանավոր երաժիշտների մեջ ստեղծվում է սրտակից բարեկամություն:

Անտոնին Դվորժակը ծնվել է 1841 թվականի սեպտեմբերի 8-ին Վլտավա գետի ափին, չեխական Նելագոզևս գյուղում: Վաղ մանկությունից Անտոնինն արդեն լսում էր ժողովրդական երգերն ու պարեղանակները: Գյուղական ուսուցիչը նկատելով մանկան անսահման սերը դեպի երաժշտությունը, նրան սովորեցնում է նոտաներ կարդալ և նվագել ջութակի վրա:

Անտոնինն արտակարգ շնորհքի տեր էր: Նա ինը տարեկան հասակում որպես ջութակահար հաճախ միանում էր երաժիշտների խմբին: Այդ խումբը երեկոները նվագում էր իր հոր պանդոկում:

Գյուղում միամյա դպրոցն ավարտելուց հետո Անտոնինը փոխադրվում է Զլոնիցե փոքրիկ քաղաքը: Անտոնինն այստեղ սովորում է նվագել ալտի, դաշնամուրի և երգեհոնի վրա, երգում է երգեցիկ խմբում: Հետո ծնողները նրան ուղարկում են Պրագա, ուր նա ընդունվում է երգեհոնային դպրոցը:

Դվորժակի մեզ հասած առաջին ստեղծագործությունը՝ երկու ջութակի, երկու ալտի և թավջութակի համար 1861 թվականին գրած կվինտետն է:

1860-ական թվականների սկզբից սկսվում է Անտոնին Դվորժակի բեղմնավոր ստեղծագործական աշխատանքը: Նա միաժամանակ որպես ալտիստ նվագում է Պրագայի «Ժամանակավոր թատրոնի» նվագախմբում: Այդ բանը նպաստում է, որ նա շփվի չեխական արվեստի ու կուլտուրայի լավագույն ներկայացուցիչների հետ, սովորի, կատարելագործի իր արվեստը:

Նա գրում է իր թավջութակի կոնցերտը, «Նոճիներ» վոկալ ցիկլը, առաջին երկու սիմֆոնիաները: Սրանց մեջ Դվորժակն օգտագործում է չեխական ժողովրդական մեղեդիները: Նա սիրում էր լինել գյուղացիների, բանվորների ու հանքափորների մոտ, ժամերով զրուցել նրանց հետ, ծանոթանում էր նրանց կյանքին ու կենցաղին, նրանց երգերին:

Անտոնին Դվորժակը, ինչպես նաև չեխական երաժշտության մի այլ կլասիկ՝ Բեդրժիխ Սմետանան իրենց ստեղծագործություններում ձգտում էին ժողովրդի մեջ արթնացնել հայրենասիրական և ազատասիրական զգացումներ:

1870 թվականին Դվորժակը գրում է իր առաջին օպերան՝ «Ալֆրեդը»: Նրա երկրորդ օպերան՝ «Արքան և ածխավաճառը» գրված է չեխական հեքիաթի հիման վրա:

Այդ թվականներին Դվորժակը գրում է ուրիշ օպերաներ, կամերային ստեղծագործություններ, երրորդ սիմֆոնիան, դաշնամուրի և ջութակի կոնցերտները, «Երեկոյան երգերը» և այլն: Վերջապես այս տարիներին է նա գրում իր հռչակավոր «Սլավոնական պարերը»:

1881 թվականին ողջ չեխ ժողովուրդը պատրաստվում էր իր ազգային թատրոնի հանդիսավոր բացմանը: Այդ կապակցությամբ Դվորժակը սկսում է աշխատել նոր օպերայի վրա: Օպերան կոչվում էր «Դիմիտրի» և փաստորեն Մուսորգսկու «Բորիս Գոդունով» օպերայի շարունակությունն էր: Դվորժակն այս օպերայում հանդես է բերում ոչ միայն ռուսական պատմության, այլև ռուսական կլասիկ երաժշտության խոր իմացություն:

Դվորժակի դեմոկրատական երաժշտությունը, իհարկե, այն ժամանակ բոլորի կողմից չէ, որ համակրանքով է ընդունվում: Կոմպոզիտորը հասարակության որոշ խավերի սառը վերաբերմունքի պատճառով հոգեկան ծանր ապրումներ է ունենում: Ահա այդ ժամանակ-

վանից սկսած նրան ջերմ պաշտպանություն ու համակրանք է ցույց տալիս վիեննական նշանավոր կոմպոզիտոր Բրամսը, որին նա նվիրել է իր լարային կվարտետներից մեկը:

Իսկական ազգային-ժողովրդական արվեստի համար տարվող պայքարի ոգեշունչ օրինակը՝ չեխական առաջավոր ինտելիգենցիան իրավացիորեն տեսնում էր ռուս գրողների ու կոմպոզիտորների արվեստում: Բալակիրեր, Տանեևը, Չայկովսկին Պրագա կատարած բազմաթիվ համերգային այցելությունների ժամանակ շատ են օգնում չեխ կոմպոզիտորներին: Երբ Չայկովսկին Պրագայում բեմադրում է իր օպերաներն ու բալետները, դրանք մեծ ազդեցություն են թողնում չեխական երաժշտության զարգացման վրա: Դվորժակի և Չայկովսկու մեջ ստեղծվում են ամենամտերիմ հարաբերություններ:

Դվորժակը դառնում է Պրագայի կոնսերվատորիայի պրոֆեսոր: Նա դաստիարակում է մի շարք հայրենասեր երաժիշտների:

1892 թվականին կոմպոզիտորը գնում է Ամերիկա: Այնտեղից իր բարեկամներից մեկին նա գրում է. «Դուք գիտեք, որ ես իմ Հայրենիքն ամեն ինչից ավելի եմ սիրում, որ ես մեծ ուրախությամբ իմ համեստ ուժերը կներդնեմ այնտեղ, որտեղ նրանց կարիքը կզգացվի, և տուն վերադառնալուց հետո ես երջանիկ կլինեմ ինձ նվիրել իմ ժողովրդի արվեստի ծաղկմանն ու զարգացմանը»:

Դվորժակն Ամերիկայում ավարտում է իր վերջին ամենանշանավոր սիմֆոնիան, որ կոչվում է «Նոր աշխարհից»: Այդ սիմֆոնիայում նա օգտագործել է ամ' րիկյան նեգրերի և հնդիկների ժողովրդական երգ'

Երկու տարուց հետո Դվորժակը նորից իր ' նիքում է: Նա գրում է իր մի շարք նոր ստեղ· ծությունները՝ սիմֆոնիկ պոեմները, վերջին օպ. ները, որոնցից հայտնին «Ջրահարսն» է:

1903 թվականին Դվորժակն սկսում է աշխատել իր «Դորիմիր» օպերայի վրա: Այդ օպերայի թեման վերցված է չեխական հանքափորների կյանքից: Դրա հինգ էջը միայն կարողացավ գրել: Հենց այդ ժամանակ Պրագայի Ազգային թատրոնում բեմադրության էր պատրաստվում կոմպոզիտորի 10-րդ՝ «Արմիդա» օպերան: Դվորժակը մասնակցում է փորձերին: Օպերայի առաջին ներկայացումը կայացավ 1904 թվականի մարտի 25-ին: Կոմպոզիտորն այնքան վատ էր զգում իրեն, որ թողեց ներկայացումն ու գնաց տուն:

1904 թվականի մայիսի 1-ին Դվորժակը վախճանվեց: Ազգային թատրոնի շենքի վրա բարձրացավ սգո դրոշը: Չեխ ժողովուրդը եղբայրական սլավոնական ժողովուրդների և ողջ աշխարհի առաջավոր մարդկության հետ խոր վիշտ ապրեց: Հռչակավոր կոմպոզիտոր Դվորժակի երաժշտական մեծ ժառանգությունը մեզ համար այսօր էլ սիրելի ու հարազատ է: Խաղաղության Համաշխարհային Խորհրդի որոշմամբ այս տարի աշխարհի ժողովուրդները նշում են Դվորժակի մահվան հիսուն տարին:

# ՊԱՏՎԻՐԱԿԸ

ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ

(63-րդ դպրոցի 8-րդ դասարանի աշակերտ)

Նկ. Ռ. ՍԱՐԳՍՅԱՆԻ

*Ոլորապտույտ և դժգույն ավազով ծածկըված ճանապարհը դանդաղ ձգվում էր Նեղոսի ափով: Ահմեդը առաջին անգամն էր անցնում այդտեղով: Ամեն ինչ նոր էր, տարօրինակ: Նույնիսկ նրա ավանակը բութ նայվածքով դիտում էր շրջապատը...*

*Եվ այս օտարության մեջ ամբողջ գյուղը կենդանացավ Ահմեդի հիշողության մեջ: Նա կարոտով հիշեց իր տունը, փոքրիկ թախտը, ուր նստում էր ընկերների հետ և չիբուխ ծխում: Հավանական է, այժմ էլ նույն թախտին նստած էին գյուղացիները և զրուցում էին... Այդ րոպեին նրա համար ընտանիքը ամենաանվիրական բանն էր, ամենաթանկը: Ինչպիսի՜ տխրությամբ նա բաժանվեց ընտանիքից: Սկզբում դա նրան երազ էր թվում, անկարելի մի բան, բայց բաժանման ժամին ամեն ինչ զգացվեց: Նա կարծում էր, թե մի կերպ կհամակերպվի այդ բանի հետ, սակայն ահա երրորդ օրն էր...*

*Գյուղը, որտեղից հեռացել էր նա, ընկած էր Եգիպտոսի և Սուդանի սահմանում, Նեղոսի ճահճոտ ափին: Այնտեղ դարերով իշխել էր մալարիան: Այս տարի, երկար անձրևներից հետո ճահիճը մեծացել էր: Գյուղացիները ճարահատված որոշել էին դիմել անգլիացի պարոնին: Եվ նա հիշեց միստր Ռոջերսոնին, այդ կապույտ, նեղ աչքերով մարդուն: Նա ասել էր. «Ես օտար եմ և ձեր երկրի հիվանդություններին անծանոթ: Լավ կլինեի ձեր պետությանը դիմեիք»:*

*«Է՛հ, գյուղացիներիս խելքն ինչ է կտրում: Ա՛յ, մարդը ճիշտ բան ասաց», մտածեց Ահմեդը, բայց և այնպես Ռոջերսոնի հեղինակությունը մի փոքր ընկավ նրա աչքում: Էլ [illegible]ացի, որ որևէ գաղտնիք չիմանա...*



*Ահմեդի առավելությունները մեծ էին մյուս գյուղացիներից։ Նա նույնիսկ գրել ու կարդալ գիտեր, գյուղացիների նամակներն էր գրում։ Եվ այդ բանի համար բոլորը նրան վստահեցին պատվիրակի պարտականությունը։ Մեծ պատիվ էր... Այդ օրը ամբողջ գիշերը նա չէր քնել։ Նա զգում էր, որ իր վրա մեծ գործ է դրվել։ Այժմ միայն նա լրջորեն գլխի ընկավ, թե ինչն էր իր բուն փործը։*



Ամեն ինչ ապշեցուցիչ էր, ամե՛ն ինչ։

*Շուտով վրա հասավ գիշերը։ Ահմեդը նայեց շուրջը։ Մինչև հորիզոնը տարածված էր ամայի, դեղին գետինը։*

*Նա գիշերեց բաց երկնքի տակ։ Օդը տաք էր, զգացվում էր Լիբիական անապատի տաք շունչը. բայց չգիտես ինչու, նրա մարմինը դողում էր։ Նա վախկոտ չէր, մենակությունը նրան երբեք չէր վախեցնում... Բայց նույնիսկ երկինքը կարծես խորթ էր թվում։ Նա կապույտ ծովի պես փռվել էր վերևում և երբեք նման չէր գյուղի ամպամած գիշերներին։ Գյուղը նա երբեք չէր մոռանում։ Այժմ այնտեղ բոլորն էլ քնած էին և միայն արթուն էր ծեր Նեղոսը, որը կարծես միշտ հեքիաթ էր պատմում խրճիթներին։ Նեղոսը... Նոր նա հիշեց Նեղոսը, որն ամբողջ ճանապարհին ուղեկցել էր իրեն։ Ահմեդը շուտով քնեց, արդեն հանգիստ էր։ Նա օտարության մեջ գտել էր հարազատին...*

*... Անցան օրեր և մի գեղեցիկ առավոտ հեռվից երևաց Կահիրեն, հեքիաթային քաղաքը։*

*Ահմեդը զարմացավ։ Հոյակապ և բարձր շենքեր էին երևում, որոնք նրա կարծիքով աստղերին էին հասնում։ «Ալլա՜հ, սիրելի ալլա՜հ, օգնիր ինձ», մտածեց նա։*

*Ահա առաջին փողոցը, որտեղից նա մտավ մայրաքաղաք։ Ասֆալտապատ պողոտան տեսնելիս նա ափսոսաց, որ այդպիսի մաքուր տեղից մարդիկ են քայլում։ Ֆելլահներ, ոստիկաններ, չարչիներ, մուրացկաններ իրար խառնված՝ մեծ ժխոր էին բարձրացրել։ Արևելքի այդ քաղաքում փողոցներն էլ էին շուկա դարձել։*

*Ամեն ինչ ապշեցուցիչ էր, ամե՜ն ինչ։ Թվում էր, թե Ահմեդը երազում ինչ-որ հրաշքներ էր տեսնում, ինչ-որ տարօրինակ բաներ։ Նա չէր էլ զգում, թե ինչպես եվրոպացի տիկինները նրա գույնզգույն ցնցոտուն էին նայում և ծիծաղում, այլ միայն տարվել էր իր տեսածներով։ Փողոցով անցնում էին ուղտեր, ավտոներ... Այս ինչ է, թռչող տո՞ւն։ Ահմեդը երկար նայեց ավտոյին և զարմացավ, որ դրանցով լիքն էր քաղաքը։*

*Վերջապես նա տեսավ մի ծուռ, նեղ փողոց, որտեղից կաղամբի սուր հոտ էր գալիս և նման էր աղբակույտի։ «Սա իմ տեղն է», վճռականորեն որոշեց նա և բախեց առաջին իսկ հանդիպած դուռը։*

*Դուրս եկավ մի ծերունի, որն ինչպես երևաց հյուրասեր էր։ Նա ընդունեց Ահմեդին։*

*Գիշեր էր արդեն։ Երեք շաբաթվա մեջ դա առաջին օրն էր, որ նա գիշերեց փակ տեղում և տաք ֆուլ կերավ։ Բայց այնպես էլ նա հանգիստ չքնեց։*

*Առավոտյան նրա առաջին գործը եղավ հարցնել ծերունուն, թե ուր պետք է դիմել։ Ծերունին մի պահ լուռ մնաց, որը զարմացրեց Ահմեդին։*

*Վերջապես նա ասաց.*

*— Լավ... Միասին գնանք՝ Մեհրութ փաշայի մոտ...*

*Ահմեդը այդ րոպեին և՛ ուրախացավ, և՛ ինչ-որ վախ զգաց։ Ուրախ էր, որ կրկին պիտի տեսներ քաղաքը. վախենում էր, որ արդեն սկսվում էր գործը։ Այդ հիշելիս նրա սարսափը կրկնապատկվում էր։*

*Փաշայի ընդունարանում հերթ կար։ Եվ գյուղացի և քաղաքացի խռնված այդտեղ խոսում էին, վիճում և ինչ-որ դատողություններ անում։ Այդ ամբոխը տեսնելով՝ Ահմեդը շփոթվեց, բայց և ակամա ուրախացավ, որ գործը հետաձգվեց։ Միաժամանակ դրա հա-*

մար նա ափսոսաց։ Մի խոսքով նրա գլխում ամեն ինչ խառնվել էր…

Մի պա՜հ նա ցանկացավ վերադառնալ տուն և հրաժարվել ամեն ինչից։

Բայց ինչ կասեին բոլորը, ինչ կմտածեին նրանք։

Ամբողջ օրը նա ոչինչ չէր խոսում, այլ լուռ դիտում էր։ Հանկարծ նա հիշեց աստծուն և սկսեց մտածել, թե նա ինչու իրեն ուժ և համարձակություն չի տալիս։ «Անպայման մի բանի համար ոխ է պահել…» եզրակացրեց նա, «բայց ինչո՞ւ, չէ՞ որ գյուղը օրը երեք անգամ աղոթում է նրան, իսկ իմ կինը նույնիսկ հինգ անգամ։ Դե՜հ, էլ ինչ… Բայց դա իմ խելքի բանը չի… մեղք է երկնքի գործերին խառնվելը»…

Արևը կամաց-կամաց մայր էր մտնում։ Լապտերը վառեցին։ Ծերունին վերադարձավ աշխատանքից…

Վերջապես եկավ նաև ընդունման օրը։ Երկյուղը պատեց Ահմեդին։ Նա երևակայում էր, թե ահա կտեսնի վեհաշուք մի մարդու՝ կախարդական գավազանը ձեռքին, որին շրջապատել են մոլլաները։ Միաժամանակ նրա մեջ գյուղացուն հատուկ հետաքրքրություն առաջ եկավ։

Հանկարծ բացվեց դուռը և դուրս եկավ երկարահասակ, ծուռ քթով և ակնոցով մի մարդ։ Նա կարդաց Ահմեդի անունը։

Ահմեդը տարակուսանքով նայեց նրան։

— Դե, ո՞վ է, ասե՛ք,— աչքերը խոժոռեց աստիճանավորը։

Գյուղացին վեր կացավ և մեղավոր աշակերտի նման գլուխը կախած, գնաց դեպի դուռը։ Նա մտավ մեծ սենյակը, որտեղ նստել էր մի գեր մարդ և խնձոր էր ուտում։ Ահմեդը գլուխ տվեց և նայեց շուրջը։

Փաշան առանց նրա երեսը նայելու, հարցրեց.

— Ասա՛, ինչո՞ւ ես եկել…

— Բարեբա՛ր տեր, մի մեծ խնդիր ունեմ, — քիչ շփոթվելով և քրտնելով սկսեց Ահմեդը.— գյուղը քեզ շատ բարևներ է ուղարկում։ Բոլորն էլ ուզեցին մի նվեր ուղարկել, բայց դե աղքատ մարդիկ ենք։ Բարեբա՛ր տեր, գյուղում սոսկալի հիվանդություն կա, սոսկալի… նույնիսկ մեր Սաիդը, հեռու քեզանից, այդ հսկա մարդը հիվանդացավ։ Բայց էլ ո՞վ ասես, որ չհիվանդացավ. Աբդուլլան հո նրանից պակասը չէ՞ր, կամ Ռաշիդը, Մուսի՜հը… Էլ ճար չմնաց բարեբա՛ր տեր և…

— Այդ հարցը ինձ չի վերաբերում,— կտրեց նրա խոսքը փաշան և սկսեց երկրորդ խնձորը մաքրել։ Հանկարծ նա թթվեցրեց դեմքը։

— Թյո՛ւ, որդոտ է… կանչեցեք հաջորդին…

Կրկին լսվեց նրա քարտուղարի բարակ ձայնը.

— Մուստաֆա Աբդել-լաթի՛ֆ…

Ահմեդը զարմացած նայում էր փաշային։ Նրա դեմքին աղերսանք կար և ինչ-որ կըսկիծ էր նրան պատել։

— Ի՞նչ ես շշմած նայում,— գոչեց փաշան, կգնաս Քարիմ փաշայի մոտ։ Հասցեն այդ մարդուց վերցրու…

Ահմեդը դուրս եկավ, նայեց շուրջը և մտածեց. «Է՜հ, ծերունին սխալ է ասել։ Ոչինչ»։

Էլ ոչ Քարիմ փաշա մնաց, ոչ էլ մարիմ փաշա։ Բոլորից էլ նույն պատասխանը… Ահմեդի գլուխը ուռել էր այս ու այն կողմ վազելուց։ Նա շատ էր նիհարել։

Ահմեդը հարմարվեց նաև քաղաքին։ Ամեն ինչ արդեն սովորական էր դարձել։ Առաջվա վախն ու երկյուղը չէին մնացել։ Սովորական էին դարձել նաև փաշաները և բեյերը…

Վերջապես մի օր նա ուրախացավ։ Փաշաներից մեկը ծիծաղով ընդունեց գյուղացուն։

— Նստիր, գյուղացի՛ ախպեր։ Պապս էլ քեզ պես գյուղացի է եղել, հա՛, այնպես որ՝ ձեր դարդից հասկանում եմ։

Ահմեդը համարձակությամբ ամեն ինչ մանրամասնորեն պատմեց և ամեն մի բառից հետո չէր մոռանում ասել իր «բարեբար տերը», որը սովորել էր ծերունուց։

— Է՛հ, դա ինձ թողեք,— արհամարհական ձևով ասաց փաշան,— դա ինչ է։ Իմ խոսքը երկրի համար սուրբ է, օրենք է։ Իմ մարդիկ ամեն ինչ կանեն, դու անհոգ կաց։ Բավական է, որ ես խառնվել եմ գործին։

Ահմեդը երախտագիտությունից և հրճվանքից չգիտեր ինչ ասել և իր երկու-երեք շաբաթվա հոգնությունը այդ րոպեին ամբողջովին մոռացավ, կարծես երիտասարդացավ…

«Լավ մարդ է», մտածեց նա և գոհունակությամբ վերադարձավ:

— Գործս հաջողվե՜ց,— բացագանչեց նա և ուղղակի ընկավ ծերունու գիրկը:

Թերևս դա ամենամեծ ուրախությունն էր, որ զգաց իր ամբողջ կյանքում:

Նա նորից հիշեց գյուղը, լո՜ւռ, խաղաղ գյուղը: Արդյոք ի՞նչ էին անում այնտեղ... Նա թաքուն հառաչեց, բայց անմիջապես



— Բարեբար տեր, մի մեծ խնդիր ունեմ...

հիշելով փաշայի խոստումները, վազեց դուրս: Մի անգամ էլ նա ցանկացավ շրջել այդ քաղաքը, տեղեկություններ հավաքել և գնալ զարմացնել գյուղացիներին:

Միայն այդ գիշերն էր, որ գյուղացին երազներով տարված, հանգիստ քնեց...

Առավոտյան նա փայփայեց ավանակի գլուխը:

— Գյուղ ենք գնում, գիտե՞ս: Նորից մեր հին ճանապարհով, հա՜...

Էշը նորից իր բութ հայացքով էր դիտում:

— Ա՜խ, դու էլ մի բան չես, էշ ես էլի՛,— ծիծաղեց Ահմեդը և ձեռքը մեկնեց ծերունուն:

— Գյուղին բարև կտանես,— հուզված ասաց ծերունին:

Ահմեդը ճանապարհ ընկավ: Ավանակը հանդարտ գնում էր Նեղոսի ափով: Գյուղացին քթի տակ մրմռում էր իր սիրած երգը.

Նեղոսի ափին լուռ նստած էի,
Ա՜խ, նստած էի Նեղոսի ափին...

Հանկարծ նա այլայլվեց և կանգնեցրեց էշը:

«Ինչո՞ւ չհարցրի, թե երբ պիտի գան»,— ինքնիրեն ասաց նա, բայց անմիջապես պատասխանը գտավ՝ «դե, որ ասացին կգան՝ կգան էլի՛, փաշան հո չի՞ խաբելու»: Նա շարունակեց ճամփան, բայց դարձյալ չէր համոզվում: «Այնուամենայնիվ, որ հարցնեի, լավ կլիներ», եզրակացրեց նա:

Վերջապես մի օր հեռու հորիզոնում երևաց գյուղը, իսկ գյուղից բավական հեռու՝ Ռոջերսոնի վիլլան:

Ահմեդը ուրախությունից հուզվեց: Նա շոյեց ավանակի բաշը և ասաց.

— Տե՛ս, հասանք...

Քիչ անց բոլորն էլ ողջունեցին պատվիրակին: Բոլորի աչքում նա մի հերոս էր, վերածնված, աշխարհ տեսած մարդ:

Սկսեցին հարցեր տեղալ նրա գլխին:

— Անունն ինչ էր... է՜ն... հա, էն որ գնացիր...

— Լա՞վ քաղաք էր...

— Ասում ես տները ոսկուց են, հը՞:

— Փաշաները լա՞վ են:

Ահմեդը պատասխանեց.

— Աննմա՛ն...

Գյուղացիները ենթադրեցին, որ հաջորդ օրն իսկ կգան օգնության: Ամեն մի խոսքից հետո նրանք Ահմեդի կարծիքն էին հարցնում:

Վերջապես եկավ նաև հաջորդ օրը: Բոլորն անհամբեր սպասում էին: Ամեն անգամ, երբ հեռվից փոշու ամպ էր երևում, նրանք հրճվում էին: Բայց ոչ ոք չեկավ... Գյուղացիները հետաքրքրությունից և լարվածությունից քիչ էին խոսում:

— Կգան,— միշտ ասում էր Ահմեդը,— թռչուն հո չեն:

Մի օր նա լսեց, որ Սաիդն էլ մեռավ: «Մեռավ», մտածեց գյուղացին. «մի՞թե այդ հսկան էլ կմեռնի... Գոնե հոգին թող

ուրախանա, որ անունը փաշաներն էլ գիտեն»։

Մալարիան անողոք էր։ Նա տզրուկի նրման կպավ նաև Ահմեդի աղջկան։ Աշխարհը մթնեց հոր աչքերին, ոչինչ նրան չէր հետաքրքրում, բացի սպասված օգնությունից։

Մի օր նա տխուր ու մտախոհ քայլում էր սենյակում։ Նա մոտեցավ լուսամուտին, ցրեց չիբուխը և նայեց հեռուն։ Նրա առջև փռվել էր հին ճանապարհը, որը շատ հուշեր արթնացրեց։ Նա խոր հառաչեց և մի առ մի հիշեց բոլորին։ Հիշեց ծերունուն, Կահիրեն, բեյերին, փաշաներին... Հանկարծ նա այլայլվեց, արձանի պես անշարժացավ և թուլացած ընկավ թախտին... Նոր նա հիշեց, որ ոչ ոք չհարցրեց նրան, թե իրենց գյուղը ո՛րն է, որտեղ էր գտնվում։ Հուսահատությունը կարծես վազեց նրա երակների մեջ և ամեն ինչ սառեցրեց։

...Իսկ գյուղացիները ամեն երեկո հավաքվում էին գյուղի ծայրին գտնվող խրճիթում և սպասում էին օգնությանը...



# ԱՌԱՋԻՆ ՓՈՐՁՈՒԹՅՈՒՆԸ

(Հատված «Սուլթանների Երկրում» վիպակից)

ՀՐ. ՀՐԱՀԱՆ

Նկ. Հ. ՍԱՆԱՍԱՐՅԱՆԻ

Դեկտեմբերի վերջին օրը Մանուկ վարպետը մորս դիմումներից ձանձրացած, ինձ տարավ վերնահարկի մեծ նախակրթարանը և ներկայացնելով դաստիարակ Մարկոս էֆենդուն ասաց.

— Մի լավ աշակերտ եմ բերել։ Ուշիմ է և լավ էլ ձայն ունի։ Խերը տեսնես։

Այսպես, Մանուկ վարպետն ինձ ապրանքի նման փոխանցեց Մարկոս էֆենդուն։ Ընդունված սովորության համաձայն, ես համբուրեցի նրա ձեռքը։ Ցույց տվեցին իմ տեղը։ Այդ րոպեից արդեն ես նախակրթարանի առաջին դասարանի աշակերտ էի։ Ես նստած էի գրասեղանի առաջ, թանաք ու գրիչ ունեի։

Իմ նոր ընկերները, որոնք գրելով ու կարդալով էին զբաղված, տարօրինակ հետաքրքրությամբ նայեցին ինձ։ Նրանց աչքերի մեջ ես կարդում էի՝ «Սրան մի քիչ տանջե՞նք, թե խնայենք» միտքը։

Նախակրթարանը լուսավոր էր։ Տասական աշակերտ մի գրասեղանի առաջ նստած պարապում էին։ Բոլորն իրենց գլուխները պատկերազարդ գրքի վրա ծռած ոտանավոր էին կարդում։ Վաղվա դասը։ Ես ամաչում էի դատարկ գրասեղանին նայել։ Բայց ի՞նչ կարող էի անել։ Ո՛չ գիրք ունեի և ո՛չ էլ ծանոթ ընկեր, որպեսզի ես էլ դաս սովորեի։

Հաջորդ ժամին թվաբանություն ունեինք։ Մարկոս էֆենդին էր ավանդում այդ առարկան։ Առաջին դասարանի քանհինգ աշակերտները հերթով գնում էին գրատախտակի մոտ և թվանշաններ գրում։ Ու երբ Մարկոս էֆենդին իր հաստ ձայնով գոռում էր «Բարձո՛մ» (հանում), նրանք սկսում էին թութակի նման խոսել.

— ...Հինգը չորսից չի ելնում, յոթից մեկը կվերցնենք և կտանք չորսին, կլինի տասնչորս։ Հինգը տասնչորսից եթե հանենք, կմնա ինը...,— ու այսպես հաջորդաբար շարունակում էին։

Հերթն ինձ հասավ։ Վախեցած ու խղճալի տեսքով վարժապետին նայեցի։ Ի՞նչ էր այդ «բարձում»-ը։ Իհարկե, թվաբանության չորս գործողություններից մեկը։ Բայց ես ոչինչ

*չէի հասկանում: Մանուկ վարպետը միայն «գումարում» էր սովորեցրել մեզ: Ու ահա, լսվեց Մարկոս վարժապետի անողոք ձայնը:*

*— Նորե՛կ, անցիր գրատախտակի մոտ ու գրիր քառասունհինգ, իսկ ներքևը՝ երեսունվեց:*

*Ես դողալով գրեցի այդ թվանշանները, և սարսափով սպասեցի անծանոթ բառին, որ չուշացավ.*

*— Բարձո՛ւմ...*

*Մատներիս հետ սիրտս էլ դողաց: Այս դժվար խնդիրը ես չէի կարող լուծել: Նոր ընկերներս էլ զգալով իմ վախը, սկսեցին բարձրաձայն ծիծաղել: Մարկոս վարժապետը դժգոհ դեմքով մոտեցավ ինձ ու տեսնելով, որ ոչ մի բան չեմ արել, մի անգամ ևս «բարձում» գոռաց: Ես վախից շփոթված դողում էի ամբողջ մարմնով: Աշակերտները անդադար ծիծաղում էին:*

*Ու ահա, չգիտեմ, ինչո՞ւ, Մարկոս էֆեն-*



...ինձ մի ոտի վրա կանգնեցրեց սրահի մեջտեղը:

*դին ավելի մոտեցավ, բարձրացրեց իր խոշոր ու ջղուտ ձեռքը, և մի շառաչուն ապտակ իջեցրեց երեսիս: Հավասարակշռությունս կորցնելով ես գետին ընկա և սարսափով գոռացի: Բայց իմ նոր դաստիարակը փոխանակ զղջալու իր անիրավ արարքի համար, ընդհակառակը՝ սկսեց հեգնել...*

*— Օհո՜... ո՞նց ուշիմ կարող է լինել մի ապտակի անգամ չդիմացող աշակերտը: Կարծես հարուստի երեխա լինի...*

*Ու բավական չհամարելով այդ պատիժը, ինձ մի ոտի վրա կանգնեցրեց սրահի մեջտեղը: Աշակերտների հեգնական ծիծաղը մի կողմից, կրած տանջանքս մյուս կողմից, ինձ գցել էին այնպիսի անհարմար դրության մեջ, որ ես չէի կարող աչքերս վեր բարձրացնել և չորս կողմս նայել: Միայն զգում էի, որ բոլորն ինձնով զվարճանում էին:*

*Դասը վերջացել էր: Բայց ես դեռ արագիլի նման մի ոտի վրա կանգնած երերվում էի: Երբ հավասարակշռությունս կորցնելով, երկու ձեռքս տարածում էի օդի մեջ, աշակերտները ավելի էին ծիծաղում: Մարկոս էֆենդին հաղթական անցնում էր կողքիցս և կիսահեգնական տոնով ասում.*

*— Հիմա պետք է մի ոտի վրա կանգնես, որպեսզի վաղը, կյանքի դպրոցում կարողանաս երկու ոտքի վրա կանգնել:*

*Ի՞նչ էր ուզում նա ասել այդ խոսքերով: Ես, իհարկե, ոչինչ չէի հասկանում: Միայն անիծում էի դպրոցն էլ, դասերն էլ, թվաբանությունն էլ, «բարձում»-ն էլ...*

*Հաջորդ առավոտ «հիվանդ» էի: Չէի ուզում դպրոց գնալ: Հիմա նախընտրում էի կոշկակար կամ դերձակ դառնալ, նույնիսկ մսավաճառի կեղտոտ խանութում ամբողջ օրը ճանճ քշել, քան դպրոցում ծաղրի առարկա դառնալ:*

*Բայց դժբախտաբար ես չէի կարող ամեն օր «հիվանդ» լինել: Մայրս ինձ համոզում էր, որ եթե դպրոց չգնամ և կրթություն չստանամ, հայրիկի նման սայլապան կդառնամ և ուրիշի համար հող ու ավազ կկրեմ:*

*Այդ խոսքերն ինձ վախեցրին: Հորս աշխատանքը շատ ծանր էր: Մենք վատ էինք ապրում, վատ սնվում: Բայց Մարկոս վարժապետի ծանր ձեռքը և «բարձում»-ը դեռ զգում էի գլխիս վրա, ականջներիս մեջ: Ու անդադար կրկնում էի.*

*— Չե՛մ գնա, մայրիկ, չե՛մ գնա...*

*Խեղճ մորս արցունքները ճնշում էին սիրտս: Ես խղճում էի նրան: Բայց դպրոցում ծեծի ու ծաղրանքի ենթարկվելու վախն ավելի էր ճնշում ինձ: Ու ես դեռ համառում*

էի, երբ հանկարծ դուռը բացվեց ու Գրիգորիկն ուրախ ձայնեց.

— Հրա՛յր, ես էլ նախակրթարան բարձրացա։

— Ո՞նց թե,— հարցրի ես զարմացած։

— Հենց այնպես։ Մայրս բողոքեց և Մանուկ վարպետն ստիպված ինձ էլ նախակրթարան հանձնեց։ Դու հիվա՞նդ ես։

— Այո... բայց դու «բարձում»-ի համար մի ոտքի վրա կանգնեցի՞ր,— հարցրի ես վշտից զարնվածի նման։

— Հապա՛, այդ Մարկոս էֆենդին երկու անգամ ապտակեց և մի ոտքի վրա երկու ժամ կանգնեցրեց ինձ։

— Աշակերտները ծիծաղեցի՞ն։

— Այն էլ ինչպե՜ս։ Բայց ես արդեն գիտեմ, ինչ է այդ «բարձում»-ը։

— Ի՞նչ է,— հարցրի ես։

— Ամենահեշտ բանը։

— Ի՞նչ ես ասում։ Ինձ էլ կսովորեցնե՞ս այդ,— խնդրեցի նորից ես Գրիգորիկին։

— Արի՛, արի՛, անմիջապես սովորեցնեմ քեզ և միասին գնանք դպրոց։ Ես էլ եմ քո նստարանին նստում։ Սրանից հետո լավ կսովորենք և բոլորի հախից էլ կգանք։

— Մարկոս էֆենդու հախի՞ց էլ,— միամտաբար հարցրի ես։

— Իհարկե՛,— քաջալերեց ինձ Գրիգորիկը, և սկսեց «բարձում»-ը սովորեցնել ինձ։

Վա՜յ, բարձում, վա՜յ։ Մի՞թե այսքան հասարակ բան է եղել։



— Արի՛, արի՛ անմիջապես սովորեցնեմ քեզ և միասին գնանք դպրոց։

Կես ժամ հետո ես արդեն առողջացել էի։ Գրիգորիկի հետ ուրախ-զվարթ դպրոց գնացինք։

Մորս ուրախությունը չափ ու սահման չուներ։ Այժմ նա վստահ էր, որ ես անպայման մարդ կդառնամ։

# ՉՈՒԿՉԻ ՏԱՏՈՅԻ ԿՅԱՆՔԻՑ

Վ. ԱՐԱՄՅԱՆ

## ԻՆՉՈՒ ՏԱՏՈՆ ՋԿՐԱԿԵՑ

Նկ. Ս. ՍԱՖԱՐՅԱՆԻ

Դուռը ծեծեցին։

— Մտե՛ք։

Ներս մտավ մի երիտասարդ։ Նա անհանգիստ էր։

— Օգնեցե՛ք,— դժվարությամբ զսպելով հուզմունքն արտասանեց նա։— Ավտոմեքենա՛ն... արջը՛...

Չուկչի Տատոն դանդաղությամբ վեր կացավ, ցած բերեց պատից կախված հրացանը, ստուգեց փողը, ծխամորճը դրեց գրպանը...

— Ես սիրում եմ օգնել, կօգնեմ,— ասաց նա և մենք դուրս եկանք։

Հուլիս ամիսն էր։ Արևը բեքվել էր մամռարմբերի վրա։ Մոծակները մեքենավարին շատ էին անհանգստացնում, խայթում էին։

— Չտեսնված ու չլսված փորձանք է,— հաճախ էր կրկնում նա՝ պտտվելով մեր շուրջը։

Մենք տեղ հասանք։ Ավտոմեքենան կանգնած էր խճուղու վրա։ Լսվեց ինչ-որ բրմփոց։ Տատոն նշան արեց։

Մի ահագին արջ, ջրաղացպանի պես ալրափոշու մեջ կորած, ավտոմեքենայի թափքից ցած էր շպրտում ալյուրի պարկերը։ Ընկնելով, նրանք պատռվում էին. արջն ուշադրությամբ նայում էր։ Նրան դուր չէին

գալիս պատռված պարկերը, սրտնեղում ու գետին էր շպրտում հաջորդը:

— Ի՞նչ լավ արջ է,— շշնջաց Տատոն: Նա հրացանն ուսից չիջեցրեց: Գրպանից դուրս քաշեց ծխամորճը: Մեքենավարն անհանգիստ շարժումներ էր անում. «ինչո՞ւ չի կրակում», մտածում էր նա: Արջը շարունակում էր իր գործը: Պարկերն իրար հետևից



*Մի ահագին արջ ցած էր շպրտում ալյուրի պարկերը:*

ընկնում էին գետին: Տատոն հանգիստ էր ու անվրդով: Նրա դեմքն արտահայտում էր հիացմունք ու զարմանք, երբեմն էլ ինչպես չարաճճի երեխա կամաց-կամաց ծափ էր տալիս.— «Այ շա՛տ ապրես, խելոք արարած»:

— Կրակի՛ր, կրակի՛ր,— երկչոտ ձայնով պահանջում էր մեքենավարը:

Արջը մի մեծ պարկ գրկած տնքալով մոտենում էր քարի եզրին: Նա, որ մինչ այդ մեզ չէր նկատել, ձայնը լսելուն պես շփոթվեց և ինքն էլ պարկի հետ ընկավ քարից: Այդ պահին Տատոն բարձր ձայնով սկսեց ծիծաղել: Երբ գազանը հեռացավ, Տատոն լուցկին վառեց և մոտեցրեց ծխամորճին:

— Ինչի՞ վրա էիր ծիծաղում,— հարցրի ես նրան:

— Կայուրի[1] խելքի,— պատասխանեց Տատոն:

— Ինչո՞ւ:

— Կայուրը չի հասկանում, թե ինչո՞ւ չկրակեցի:

Տուն վերադարձանք:

Այդ երեկո չուկչի Տատոյի պատմությունից ես հասկացա, որ գազանների վրա բոլոր դեպքերում կրակել չի կարելի. եթե արջը քոթոթներ ունի, ձուկ է որսում, քնած է, կամ հիվանդ է, խաղում է իր քոթոթների հետ, երբ կերակրում է նրանց՝ նրան անհանգստություն պատճառելը մեղք բան է:

— Գազանն էլ մայր է դառնում, նա սիրում է իր զավակներին, լալիս է մեռած ձագուկի վրա, կերակրում, խաղում է նրանց հետ:

Տատոն բացատրեց, որ այսօրվա արջը կաթնասուն քոթոթներ ուներ: Նա նկատել էր մայր արջի կաթով լի կուրծքը: Ահա թե ինչու նա հրացանը ուսից վար չբերեց:

# ՇԱՏԿԵՐԻԿ

Ձմեռ է, սառնամանիք: Սառույցը տնքում է և խոր ակոսներով ճեղքվում: Նրանից բարձրանում են մշուշի պես թույլ գոլորշիներ և իրենց հետ բարձրացնում բազմաթիվ փոքրիկ ծիածաններ: Քիչ հետո գոլորշիները թանձրանում են և մթնում, իսկ կոտրված սառույցը մուգ կապույտ գույն է ընդունում: Գիշերը նրանք նմանվում են կապույտ լույս արձակող մանր խարույկների, իսկ գոլորշիներն անհետանում ու լուծվում են մառախուղի մեջ:

Ահա այդ ժամանակ բևեռային ցուրտ գիշերներին, շատկերիկը դուրս է գալիս որս անելու: Շնից մի քիչ մեծ այդ գազանի խիտ շագանակագույն մորթին իրեն շատ տաք է պահում: Նրա թաթերը լայն են,

[1] *Կայուր—սահնակավոր. այդպես են ասում մեքենավարին:*

ականջները՝ կարճ, աչքերը մթության մեջ կրակի պես վառվում են: Նա իսկապես շատկերիկ է, երբեք չի կշտանում...

Եվ ահա շատկերիկը գտնում է բլրակից իջնող արահետը, նրա կարճ պոչն անհամբերությունից սկսում է դողդողալ, հաստ կոպերը կիսով չափ իջեցնում է, պառկում, գլուխը դնում առաջին թաթերի մեջ և սպասում: Ցրտից դողդողացող նապաստակը չիմանալով, որ իր ճանապարհին դարան է մտել սարսափելի գազանը՝ վազում է դեպի բլրակն ու ընկնում նրա ճանկը:

Ամենից շատ շատկերիկին դուր է գալիս շան թարմ միսը: Նա վտանգի է ենթարկում իր կյանքը՝ շուն որսալու համար: Զուկչի Տատոն մի անգամ չէր նկատել, որ շատկերիկը հետևում է իր նարտին: Փշատերև ծառերի բացատներով շները մեծ արագությամբ տանում էին նարտը դեպի առաջ: Հետո նրանք սկսեցին դանդաղեցնել ընթացքը: Վերջին զույգի մի շուն աղիողորմ կլանչեց: Ուղեցույց շունը, որ գնում էր առջևից, բարկացած ետ նայեց և երկչոտ շանը ցույց տվեց իր սուր և սպառնալից ատամները: Նարտը նորից սոսկալի արագությամբ սլացավ առաջ, այնպես որ Տատոյի շունչը կտրվում էր: Նա հազիվ էր իրեն պահում սահնակի վրա: Շատկերիկը կրնկակոխ վազում էր նարտի հետևից: Նա քիչ հետո հավասարվեց նարտին: Տատոն շոշափեց քնապարկը և սարսափով նկատեց, որ հրացանը չկա: Ճամփին ընկել էր: Համառ ու դիմացկուն գազանը շարունակ կարճացնում էր իր և ուղեցույց շան միջև եղած տարածությունը:

— Ալայ, Ալա՜յ,— գոչեց Տատոն ուղեցույց շանը:

Գազանը հավասարվեց Ալային: Տատոն ետ գցեց վրայի քուրքը, գոտուց դուրս քաշեց որսորդական դանակը և կռացավ լծաշարքի վրա: Հանկարծ Ալայը զգաց, որ մենակ է մնացել, նա ետ նայեց: Նարտը պոկված լծաշարքից բլրակից ցած էր գլորվում:

Երբ Տատոն ուշքի եկավ, տայգան արդեն լուռ էր. սաստիկ ցուրտը դաղում էր: Հյուսիսում, հորիզոնի վրա, գծագրվում էին հյուսիսափայլի առաջին, դողդոջուն ճառագայթները: Երկինքը լի էր աստղերով:

«Գիշեր է», մտածեց Տատոն և սարսուռ զգաց: Այս ժամին տայգայում մենակ, առանց քուրքի ու հրացանի... Ոչ նարտը կա, ոչ լծաշարքը... հիշեց, որ որսորդական դանակով կտրել է լծաշարքի գոտիները ու շներին ազատ արձակել... Այստեղ ընդհատվեց նրա մտքերի շարքը: Զգաց, որ գլուխը ծանրանում է և քնեց...

...Եվ ահա երկնքի գմբեթում երևում է մի ալ կարմիր գունդ: Նա մեծանում է ու խտանում, ապա մի ահագին հովանոցի նման կախվում է երկրի վրա և սկսում է ճոճվել, ալեկոծվել: Ձյան վրա անդրադառնում, բեկվում են, մեկը մյուսին հաջորդող ծիածանի բոլոր գույները: Տատոյի հաստ կոպերը զգում են գույների այդ չնաշխարհիկ խաղը, նա սթափվում է, բայց սառած վերջավորությունները չեն ենթարկվում նրան:

— Ալա՜յ, Ալա՜յ,— չգիտես թե ինչու, գոչում է նա:

«Ո՜ւ, ո՜ւ, ո՜ւ», հասնում է Տատոյի ականջին՝ հեռու ձորերի և տայգայի արձագանքը: Ահարկու գազանը թռչելով ձյունաթմբերի վրայով շտապում է դեպի նրա ձայնը:

Հանկարծ հյուսիսափայլի վառ գույների տակ չուկչին նկատում է գազանին: Նա մի պահ չի իմանում, թե ինչ անի, փորձում է ետ քաշվել և այդ իսկ վայրկյանին ձյան վրա նկատում է ծիածանի գույներով ողողված ոսկրե բռնակով փայլուն դանակը: Գազանը ցատկում է վերջին ձյունաթումբը և կանգնում: Չուկչին տեսնում է սպառնալից սպիտակ ժանիքները, ագահ ու կրակոտ աչքերը. սառը քրտինքը պատում է նրան: Գազանը զարհուրելի ճիչ է արձակում և պատրաստվում է թռիչքի:

— Ալա՜յ, Ալա՜յ,— գոչում է չուկչին...

Այնուհետև Տատոն ոչինչ չի հիշում:

— Ես մի շաբաթից ավելի հիվանդ մնացի:

— Իսկ Ալայն ի՞նչ եղավ,— հարցրի ես:

— Ալայը հիմա էլ կա, ծերացել է, աչքերը լավ չեն տեսնում,— ասաց չուկչին և լցրեց ծխամորճը:

— Իսկ դուք ինչպե՞ս տուն հասաք,— նորից հարցրի ես:



*Տատոն գոտուց դուրս քաշեց որսորդական դանակը և կռացավ լծաշարքի վրա։*

— Ես հետո իմացա։ Ալայը վազել էր յուրտը, նա կարողացել էր հասկացնել, որ ես վտանգի մեջ եմ. և առաջնորդել էր հորս դեպի նարտը։ Ինքը շատ առաջ էր վազել և կռվի բռնվել գազանի հետ և նրան հաղթել։ Հետո նայրս ինձ դրել էր ճնապարկի մեջ ու տուն բերել։ Շատկերիկի մորթին հիմա էլ մեր տանն է։

— Մյուս շներն ի՞նչ եղան,— նորից հարցրի ես։

— Վախկոտ շներին լափեց։ Յակուտն ասում է՝ վախկոտ մարդուն նապաստակն է կերել, քաջ մարդը՝ արջին։

Ուշ գիշեր էր, որ մենք պառկեցինք։ Տատոն խոստացավ առավոտյան ինձ իր հետ որսի տանել։

## ՄԵՐ ՀՈՐԹՈՒԿԸ

Պ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

*Շա՜տ եմ սիրում մեր հորթուկին.*
*Բաշ ճակատով սիրունիկին։*
*Ես եմ նրան միշտ խնամում,*
*Հետը խաղում, ուրախանում.*
*Մեկ-մեկ հանում մաքուր օդի,*
*Որ ավելի լավ թռչկոտի։*
*Ջուր եմ տալիս, զովացնում,*
*Շաբաթը մեկ լողացնում։*
*Հենց որ բացվեն տաք օրերը,*
*Կանաչ հագնեն զով սարերը,*
*Կտանեմ ես նրան արոտ,*
*Անուշ անի ծաղիկ ու խոտ,*
*Որ մեծանա, լավ չաղանա,*
*Ծաղիկից էլ լավ կով դառնա։*
*Շա՜տ եմ հոգում նրա մասին,*
*Որ նվիրեմ մեր կոլխոզին։*




Յ. ԱՂԱՍԱՐՅԱՆ

*Տողիկը դույլն առած մոտեցավ արևոտ լուսամուտի առաջ՝ տակառաձև մեծ ծաղկամանի մեջ աճած ծառին։ Նա մի պահ հիացմունքով նայեց ծառի տարածված ճյուղերին և սկսեց ջրել։*

*— Ռուբիկ, գիտե՞ս, որ այս ֆիկուսները թթենիների ընտանիքին են պատկանում,— հարցրեց նա փոքր եղբորը։*

*— Դո՛ւ էլ... այնպիսի բան ասա, որ հավատալի լինի,— պատասխանեց Ռուբիկը։*

*— Չե՞ս հավատում... դե լսի՛ր... Թթենու ընտանիքից են նաև թղթի ծառը, որի կեղևից բարձրորակ թուղթ են պատրաստում, հացենին, որի քսան կիլոգրամանոց պտուղներից ուտելիք են եփում, կովի ծառը, որի հյութը կովի կաթի համ ունի և նրա պես սննդարար է...*

*— Լա՜վ, լա՜վ, մի հնարի. թղթի ծառ, կովի ծառ,— քրոջն ընդհատեց Ռուբիկը և ուզեց դուրս գալ սենյակից։*

— Ո՞ւր ես գնում, սպասի՛ր,— ասաց Շողիկը.— Ինձ չե՞ս հավատում, գնանք պապիկին հարցնենք։

Շողիկը եղբոր ձեռքից բռնած տարավ պապիկի աշխատասենյակը։ Նա բացատրեց իրենց վեճի նյութը։ Պապիկը ժպտաց և Ռուբիկի սև մազերը շոյելով ասաց.

— Այդտեղ անհավատալի ի՞նչ կա որ։

— Ուրեմն ֆիկուսը թթենու ընտանիքի՞ց է,— տարակուսանքով հարցրեց Ռուբիկը։

— Այո՛։

— Կովի, թղթի ծառեր է՞լ կան։

— Անկասկած։

— Իսկ ինչո՞ւ ֆիկուսը նման չէ թթենուն։

— Նույնիսկ ֆիկուսի մի տեսակը մյուս տեսակին շատ քիչ բանով է նման, կամ բոլորովին նման չէ։ Այդ տարբերությունը, իհարկե, արտաքինից է. նրանք ունեն նմանություն, որը նկատել կարող է միայն հմուտ բնագետը,— պատասխանեց պապիկը։

Թոռնիկները նստեցին պապիկի կողքին։

— Ֆիկուս կարիկան թթի պես քաղցր պտուղներ ունի, նրա մի տեսակը գինեպտուղ է տալիս, մյուս տեսակը՝ ֆիգը կամ թուզն է։ Դա յոթանասուն տոկոս շաքար է պարունակում. սիկիմոր տեսակը հայտնի է չափազանց ամուր փայտով, որն օգտագործվում է որպես շինանյութ։

— Քանի տեսակ ֆիկուս կա, պապի՛կ,— հարցրեց Շողիկը։

— Հազար տեսակ,— պատասխանեց պապիկը։— Ֆիկուսներ կան, որ ոչնչով նման չեն մեր այս ֆիկուսին։ Նրանք շատ մանր են, այդ պատճառով կոչվում են մինիմա՝ փոքր։ Նրանք աճում են գետնի վրա պառկած, կամ ծառերի կեղևի վրա և իրենց մանրիկ արմատներով ծծում են նրանց սնունդը։ Դրանց հակառակ, հսկա ծառ է, բենգալական, կամ բանյան կոչվող ֆիկուսը։

— Քեռոնց թթենու չափ կլինի՞,— հետաքրքրվեց Ռուբիկը։

— Թթենու չա՞փ, ի՞նչ ես խոսում, նրա յուրաքանչյուր ծառը մի անտառ է կազմում։ Այդ ծառը երեսուն մետր բարձրություն ունի, բնի հաստությունը տաս մետր է, իսկ ամեն մի տերևը՝ մի մետրից ավելի լայն է։ Նրա հորիզոնական ճյուղերը ամեն տարի կեղծ արմատներ են արձակում և իջնելով գետին՝ հարյուրավոր երկրորդական բներ են կազմում։

Ռուբիկն աշխատեց պատկերացնել պապիկի ասածը, բայց չկարողացավ։ Պապիկը բացատրեց։

— Ներբուդդ գետի ափին բանյանի մի հսկա ծառ է գտնվել։ Նա ութ-ինը հարկանի շենքի բարձրություն ունի։ Այդ ծառի հիմնական բունը շրջապատված է հազար երեք հարյուր երկրորդական բներով և երեք հազար մանր օդային արմատներով։ Այդ մի ծառը կազմում է մի մեծ անտառ, նրա ստվերում մի անգամ հինգ հազար մարդուց բաղկացած մի հեծելազոր է պատսպարվել։ Ծառըն ապրել է երեք հազար տարի և երևի դեռ շատ կապրի։ Նրա ճյուղերի խիտ դասավորությունը և խոշոր տերևները այնպիսի տանիք են կազմում, որ արևի լույսը չի կարողանում թափանցել։ Այդ պատճառով այդ անտառում գիշերվա նման խավար է տիրում։

Պապիկը իր գրապահարանից հանեց մուգ կանաչ կողով մի հաստ գիրք, բաց արեց բանյանի նկարը և ցույց տվեց։

Թոռնիկները գլուխները թեքեցին գրքի վրա և նայեցին տարօրինակ ծառին։

Պապիկը մատիտի ծայրով ցույց տվեց։

— Տեսնո՞ւմ եք, փոքր չէ այս անտառը, չէ՞, բայց կազմված է միայն մեկ ծառից։ Ցեյլոնում կան այնպիսի ծառեր, որոնցից յուրաքանչյուրի տակ հարյուր խրճիթ կարելի է կառուցել, այսինքն՝ մի ամբողջ գյուղ։

— Մեր ֆիկուսն է՞լ պիտի այդքան մեծանա,— հարցրեց Ռուբիկը։

—Ո՛չ։ Մեր ֆիկուսը բանյանի տեսակին չի պատկանում։ Մերը՝ ամենաօգտավետ տեսակներից մեկն է, որը կոչվում է ֆիկուս էլաստիկա, այսինքն՝ ռետինի ծառ։

— Մի՞թե դրանցից ռետին են ստանում,— զարմացավ Շողիկը։

Պապիկն առանց պատասխանելու տեղից վեր կացավ, հանդարտ քայլերով անցավ մյուս սենյակը և ֆիկուսի ծառից մի տերև պոկելով, վերադարձավ իր տեղը։

— Տեսնո՞ւմ եք այս հեղուկը,— ասաց նա տերևը կտրելով և սեղմելով,— այս կաթնահյութը մոտ տասնութ տոկոս կաուչուկ է պարունակում։

— Հետո՞, անտառից քաղում են, կաուչո՞ւկ պատրաստում,— հարցրեց Ռուբիկը։

— Ո՛չ միայն անտառից. շատ վայրերում, ինչպես օրինակ Հնդկաստանում, Հնդկաչինում և Մալայան Արշիպելագ կղզիներում մշակում էին հսկայական ագարակներով։ Իսկ երբ տարածվեց հևեյա բույսը, որը ոչ թե տասնութ, այլ երեսուներկու տոկոս կաուչուկ է պարունակում, սկսեցին մշակել այն։

Ռուբիկը դեռ բանյանի թողած ազդեցության տակ էր։ Նա ջանում էր պատկերացնել մի ծառ, որը կարող է ամբողջ անտառ կազմել։

---

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Հ. ԳԱՍՊԱՐՅԱՆ

(Շախմատի միջազգային վարպետ)

*1886 թվականին աշխարհում առաջին անգամ կայացավ պաշտոնական մատչ, որտեղ հանդիպեցին այն ժամանակվա ուժեղագույն շախմատիստներ Ստեյնիցը և Ցուկերտորտը։ Մատչը ավարտվեց Ստեյնիցի հաղթանակով։ Նա դարձավ աշխարհի առաջին չեմպիոնը։ Այդ մրցությունից հետո նա երեք անգամ հաջողությամբ պաշտպանեց իր կոչումը։ Չորրորդ անգամ, 1894 թվականին Լասկերի հետ ունեցած հանդիպման ժամանակ նա տանուլ տվեց, որից հետո աշխարհի չեմպիոն դարձավ Լասկերը։ Մինչև 1921 թվականը Լասկերը աշխարհի չեմպիոնն էր։ Նա ունեցավ վեց հաջող հանդիպում, և միայն յոթերորդ մատչում պարտվեց Կապաբլանկայից։ Վերջինս իբրև աշխարհի չեմպիոն հանդես եկավ միայն մեկ մատչում։ Ռուսական շախմատային դպրոցի ներկայացուցիչ Ալյոխինը տարավ Կապաբլանկային և դարձավ աշխարհի չեմպիոնը։ Դրանից հետո նա խաղաց երկու մատչ Բոգոլյուբովի դեմ և երկու անգամ էլ շահեց խաղը։ 1935 թվականին Ալյոխինի և Էյվեի միջև մատչ տեղի ունեցավ։ Պատահական ձևով Ալյոխինը պարտվեց և Էյվեն դարձավ աշխարհի չեմպիոնը։ 1937 թվականին Ալյոխինը մեծ գերակշռումով հաստատուն հաղթանակ տարավ Էյվեի դեմ և նորից վերականգնեց աշխարհի չեմպիոնի իր կոչումը։ Շախմատի պատմության մեջ դա առաջին դեպքն էր, երբ նախկին չեմպիոնը նորից վերականգնում է իր կոչումը։*

*Երեսունական թվականների վերջերին արդեն միջազգային տուրնիրներում մեծ հաջողությունների են հասնում երիտասարդ սովետական շախմատային դպրոցի ներկայացուցիչները, հատկապես գրոսմայստեր Բոտվիննիկը։ Բոլորին հայտնի էր, որ աշխարհի չեմպիոնի կոչման առաջին հավակնորդը ՍՍՌՄ-ի բազմիցս չեմպիոն, գրոսմայստեր Բոտվիննիկն էր։ Առաջացավ Ալյոխին—Բոտվիննիկ մատչի կազմակերպման պահանջը։ Բայց վրա հասավ Հայրենական Մեծ պատերազմը և այդպես էլ այդ մատչը տեղի չունեցավ։ 1946 թվականին Ալյոխինը մահացավ և շախմատային աշխարհը մնաց առանց չեմպիոնի։ 1948 թվականին առաջնության համար կազմակերպվեց աշխարհի հինգ ուժեղագույն գրոսմայստերների մատչ-տուրնիր, որը վերջացավ սովետական գրոսմայստեր Բոտվիննիկի փայլուն հաղթանակով։*

*Երբ սովետական շախմատիստները մտան միջազգային շախմատային կազմակերպության (ՖԻԴԵ) մեջ, մշակվեցին աշխարհի առաջնության համար տարվող նախապատրաստական մրցումների կանոնները։ Երեք տարին մի անգամ աշխարհի չեմպիոնը պարտավոր է պաշտպանելու իր կոչումը դրա նոր հավակնորդի դեմ։ Այդ հավակնորդը պետք է առաջ քաշվի մի շարք կարևոր մրցումներում հաղթանակ տանելուց հետո։ Այդպիսի մրցություն էր 1950 թվականին Բուդապեշտում կայացած ուժեղագույն գրոսմայստերների միջազգային տուրնիրը։ Ինչպես հայտնի է այդ տուրնիրում առաջին և երկրորդ տեղը շահեցին սովետական գրոսմայստերներ Բրոնշտեյնը և Բոլեսլավսկին։ Այս երկուսի միջև կայացած մատչը վերջացավ Բրոնշտեյնի հաղթանակով։ Այսպիսով աշխարհի առաջնության վիճարկման համար իրավունք ստացավ Բրոնշտեյնը, որը 1951 թվականի մատչում հանդիպեց Բոտվիննիկի հետ։ Այդ մատչը ավարտվեց ոչ ոքի՝ 12:12 հաշվով։ Մրցման կանոնների համաձայն Բոտվիննիկը մնաց աշխարհի չեմպիոնը։*

*Բոտվիննիկի հետ հանդիպելու նոր թեկնածուի առաջ քաշման համար մրցումներ անց կացվեցին 1952—53 թվերին։ Այդ մրցումները ավարտվեցին աշխարհի ուժեղագույն գրոսմայստերների միջազգային տուրնիրով, որը կայացավ Շվեյցարիայում։ Ինչպես հայտնի է, տուրնիրին մասնակցում էին 15 գրոսմայստերներ։ Սովետական ինը գրոսմայստերները, այդ տուրնիրում ձեռք բերին խոշորագույն հաջողություններ։ Առաջին տեղը գրավեց գրոսմայստեր Սմիսլովը, որը 28 հնարավորից հավաքեց 18 միավոր և ձեռք բերեց աշխարհի չեմպիոն Բոտվիննիկի հետ հանդիպելու իրավունքը։ Երկրորդ, երրորդ և չորրորդ տեղերը բաժանեցին գրոսմայստերներ Բրոնշտեյնը (Մոսկվա), Կերեսը (Տալլին) և Ռեշևսկին (ԱՄՆ), յուրաքանչյուրը հավաքելով 16 միավոր։ Հինգերորդ տեղը՝ 15 միավորով գրավեց աշխարհի ամենաերիտասարդ գրոսմայստեր Պետրոսյանը (Մոսկվա)։*

*Այժմ շախմատային աշխարհը հետևում է աշխար-*

*հի առաջնության համար պայքարող սովետական գրոսմայստերներ Բոտվիննիկի և Սմիսլովի մատչին, որը կայանում է Մոսկվայում։ Մատչի կանոնների համաձայն խաղացվելու է 24 պարտիա։ Հաղթանակող կլինի նա, ով կհավաքի 12½ և ավելի միավորներ։ 12:12 հաշվի դեպքում աշխարհի չեմպիոնի կոչումը կմնա Բոտվիննիկին։*

*Անկախ Բոտվիննիկ—Սմիսլով մատչի ելքից միջազգային առաջնությունը նորից կպատկանի աշխարհում ամենաառաջավոր սովետական շախմատային դպրոցի ներկայացուցչին։*

*Ահա Մ. Բոտվիննիկի և Վ. Սմիսլովի խաղացած պարտիաներից երկուսի վերջին քայլերը։ Նրանք հետաքրքիր կոմբինացիաների միջոցով շահել են խաղն իրենց հակառակորդներից։*

**Մոսկվա, 1948 թ.**

Կերես



Բոտվիննիկ

Սկսում են սպիտակները,

21. Նg5:g7+! Աg8:g7
22. Զg3—h5+ Աg7—g6
23. Թd4—e3 սևերը հանձնվում են:

**Գրոնինգեն, 1946 թ.**

Կոտնաուեր



Սմիսլով

Սկսում են սպիտակները,

18. Զa4—c5!! d6:c5
19. Փc1—f4! Փf8—d6
20. Փf4:d6 Նb7—b6
21. Թc6:d7+!! սևերը հանձնվում են:




## ԽՆԴԻՐՆԵՐ

Գտնել այնպիսի վեպերի և պատմվածքների անուններ, որոնց մեջ օգտագործված են հետևյալ թվերը՝ 2, 3, 5, 6, 9, 15, 93, 1001, 1812, 1919, 80 000, 150 000 000, 500 000 000:

2 և 3 թվանշանների միջև ինչպիսի մաթեմատիկական նշան դնել, որ ստացված թիվը լինի 2-ից մեծ և 3-ից փոքր:

1888 թիվը ինչպե՞ս բաժանել երկու մասի, որ ամեն մի կեսը լինի 1000:



Երբ ալպինիստական արշավախումբը բարձրանում էր լեռան գագաթը, հանդիպեց մի տեսարանի: Լեռան գագաթը շրջապատից բաժանվում էր խոր անդնդով, որի լայնությունը բոլոր կողմերում հավասար էր 6 մետրի: Ալպինիստների մոտ բացի 5,8 մետր երկարություն ունեցող երկու գերանից, ուրիշ ոչինչ չկար: Ալպինիստները ինչպե՞ս պետք է օգտագործեն իրենց մոտ եղած գերանները, որպեսզի կարողանան անդունդի վրայով անցնել:

*Առաջարկ՝ Ս. ԲԱԴԱԼՅԱՆԻ*

# ԶԱՅՆՎՈՐԴ

1. Երաժշտական-դրամատիկական խոշոր ստեղծագործություն. 2. Հանրահայտ «Սոխակ» ռոմանսի հեղինակը. 3. Իտալացի մեծ կոմպոզիտոր. 4. Չայկովսկու օպերաներից. 5. Թեթև, հետաքրքրաշարժ բնույթի ոչ մեծ երաժշտական ստեղծագործություն. 6. Երաժշտական գործիք. 7. Երաժշտական խոշոր ստեղծագործություն. 8. Երաժշտական մենոլոգ. 9. Հայկական օպերա. 10. Ռուս մեծ երգիչ. 11. «Դուբրովսկի» օպերայի հեղինակը. 12. Ռուսական և ուկրաինական ժողովրդական պար. 13. Լեհական ժողովրդական պար. 14. Հայկական երաժշտության կլասիկ. 15. Երաժշտական հնչյուն. 16. Սովետական երգիչ, Ստալինյան մրցանակի լաուրեատ. 17. Երաժշտական գործիք, ջութակի նախատիպը. 18. Ձայնային տերմին.



*Կազմեց՝ Գ. ՄԱՆՈՒԿՅԱՆԸ*

# ՓՈՐՁԻՐ ԱՆՑՆԵԼ

**(Խ ա ղ)**

Ջոկավար Սուրիկն իր մոտ կանչեց Լևոնին ու Ռուբիկին և ասաց.

— Հաջորդ հավաքույթում խաղի համար անհրաժեշտ է ութսուն սանտիմետր տրամագիծ ունեցող երկու շրջանակ: Կարո՞ղ եք պատրաստել:

— Իհարկե՛, կարող ենք, բայց ինչի՞ց պատրաստենք:



— Մետաղալարից կամ փայտից: Աշխատեցեք, որ գունավոր լինի:

Հավաքույթի օրը Լևոնն ու Ռուբիկը շրջանակները ձեռքներին պիոներական սենյակ մտան: Սուրիկն ջոկի պիոներներին ասաց.

— Ապա դուրս եկեք միջանցք և բաժանվեցեք երկու խմբի:

Հրահանգը կատարվեց:

— Իսկ դուք,— դիմեց Լևոնին և Ռուբիկին,— շրջանակները տարեք ութ քայլ հեռու և պահեցեք իրար մոտ հորիզոնական դիրքով:

— Չորս հոգուց ամեն մեկը, երեք անգամ, պետք է աչքերը կապած անցնի շրջանակի միջով: Յուրաքանչյուր անցում հաշվվում է մի միավոր: Երբ պատահի, որ հակառակ կողմի խաղացողը կորցնի աչքաչափը և անցնի ոչ իրենց շրջանակի միջով, նրանց շահած միավորներից մեկը կհանվի: Որ կողմը երեք անգամ անցնելուց հետո շատ միավորներ շահեց, նա էլ կհամարվի հաղթողը:

Խաղն սկսվեց: Պիոներները ութ քայլ հեռավորությունից քայլելով գնում էին և առանց դիպչելու շրջանակներին, անցնում նրա միջով: Լևոնը այնքան լավ անցավ, որ երեխաները կարծեցին, թե նրա աչքերը կապած չեն:

— Հաջորդ անգամ մենք շրջանակները կդնենք տասներկու քայլի վրա,— ասաց Սուրիկը:

*Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ*

## ՓՈԽԱՐԻՆՈՂՆԵՐԻ ԲԱՅԼԵՐԳ

Խոսք՝ Վ. ՎԱՐԴԱՆՅԱՆԻ

ԲԱՅԼԵՐԳԻ ՏԵՄՊՈՎ

Երաժշտությունը՝ Վ. ԱՐԱՐԱՏՅԱՆԻ

mf
Պի - ո - ներ - ներ ենք միշտ ա - ռույգ, տո - կուն
f
Պար - տիան է մեր մեծ մեզ ա - ռաջ - նոր - դում
dolce
Միշտ օգ - նում է մեզ կոմ - սո - մոլն ա - րի ուս - ման մեջ, գոր - ծում, կյան - քում վիթ - խա - րի:
ff
Միշտ օգ - նում է մեզ կոմ - սո - մոլն ա - րի՝
cresc.
ուս - ման մեջ, գոր - ծում, կյան - քում վիթ - խա - րի:
1.2. 3.

Պիոներներ ենք միշտ առույգ, տոկուն,
Պարտիան է մեր մեծ մեզ առաջնորդում,
Միշտ օգնում է մեզ կոմսոմոլն արի՝
Ուսման մեջ, գործում, կյանքում վիթխարի:

Ձեռք ենք բերում մենք նոր գիտելիքներ,
Թև է տալիս մեզ Հայրենիքը մեր,
Մեր ողջ ջանքերը, մինչ վերջին վայրկյան,
Կտանք մեր ազատ երկրին հաղթական:

Ամենուրեք թող երգը մեր հնչի,
Ջինջ աղբյուրի պես թող միշտ կարկաչի,
Մեր մեծ պարտիայի վեհ գործի համար,
Առա՛ջ, դեպ առա՛ջ քայլենք խանդավառ:

## ՀԵՏԱՔՐՔԻՐ ՏԵՂԵԿՈՒԹՅՈՒՆ

### Պայքար քիմիական նյութերով

Մոսկվայի՝ Տիմիրյազևի անվան Գյուղատնտեսական ակադեմիայի աշխատակիցներ Ի. Ի. Գունարը և Մ. Յա. Բերեզովսկին բազմաթիվ փորձերի միջոցով գտան քիմիական այն նյութերը, որոնցով կարելի է պայքարել հացաբույսերի մոլախոտերի դեմ: Այդ աշխատանքը 1951 թվականին արժանացավ Ստալինյան մրցանակի:

Փորձերը պարզել են, որ ճիշտ գիտնականների գործադրած քիմիական նյութերը ոչ թե վնասում են բոլոր բույսերին, այլ միայն երկշաքիլավորներին: Հենց այդպիսի բույսերից են հացաբույսերին խիստ վնաս հասցնող մոլախոտերը՝ կաքաբեկը, կապույտ տերեփուկը, երիցուկը և այլն: Բոլոր հացաբույսերը՝ ցորենը, գարին, վարսակը, տարեկանը, հաճարը, կորեկը միաշաքիլ են:

Հացահատիկային ցանքերի վրա քիմիական նյութեր սրսկում են ինքնաթիռների օգնությամբ: Տարբեր կլիմա ունեցող երկրամասերում՝ Սիբիրում, Ալթայում, Դոնում, Կուբանում, Ուրալում, Ուկրաինայում, Կովկասում և այլ վայրերում, սրսկումները հաջող անցան: Մոլախոտերը դեղնում, կուչ էին գալիս ու ոչնչանում, իսկ հացաբույսերը միանգամայն անվնաս էին մնում:

Քիմիական նյութերի միջոցով հացահատիկային բույսերի քաղհանը միլիոնավոր կոլտնտեսականների կազատի դժվարին աշխատանքից: Ինքնաթիռն օրական կարող է սրսկել 100—200 հեկտար տարածություն, փոխարինելով 500—1000 մարդու աշխատանքին:

Քիմիական նյութերի միջոցով քաղհանը բարձրացնում է նաև հացահատիկի բերքը:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

1. Ես տեսել եմ Լենինին — Մ. ՑԻՄՄԵՐԻՆԳ .
2. Նվերը — ՀՌ. ՊՈՂՈՍՅԱՆ . . . . . . 2
3. ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները 3
4. Մակետը — ՅՈՒ. ՄԱՐՅԱՆ . . . . . . 4
5. Մուքել քեռին — Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆ . . . 8
6. Փորձադաշտը — Ա. ՍԵԿՈՅԱՆ . . . . 9
7. Ձնծաղիկը — Վ. ԴԱՎԹՅԱՆ . . . . 11
8. Փոքրիկ ծառի երկյուղը — ՍԵՐԻՆԵ . . . 12
9. Ծույլը — ԱՐ. ԱՅՎԱԶՅԱՆ . . . . . 13
10. Մանկատան սաները — Դ. ԳԱԼՋՅԱՆ . . 13
11. Իմ ռեժիմը — Ծ. ԳԵՎՈՐԳՅԱՆ . . . . 15
12. Օգնություն գրադարանին — Հ. ՄՈՒՐԱԴՅԱՆ 15
13. Ջեխ մեծ կոմպոզիտորը — Յ. ԲՐՈՒՏՅԱՆ . 16
14. Պատվիրակը — Պ. ՋԵՅԹՈՒՆՑՅԱՆ . . . 17
15. Առաջին փորձությունը — ՀՐ. ՀՐԱՀԱՆ . . 21
16. Զուկչի Տատոյի կյանքից — Վ. ԱՐԱՄՅԱՆ . 23
17. Մեր ճորքուկը — Պ. ԽԱՉԱՏՐՅԱՆ . . . 26
18. Մի ծառով ամբողջ անտառ — Ֆ. ԱՂԱՍԱՐՅԱՆ 26
19. Միջազգային առաջնության համար — Հ. ԳԱՍՊԱՐՅԱՆ . . . . . . . . . . 28
20. Հետաքրքիր ժամանց . . . . . . . 29
21. Փոխարինողների քայլերգ — Վ. ԱՐԱՐԱՏՅԱՆ 31
22. Մեր օրացույցը

*Շապիկի առաջին էջը՝ նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ, չորրորդ էջը՝ նկ. Գր. ԱՂԱՍՅԱՆԻ։*

*Խմբագիր՝* ՏԱԼՅԱՆ Վ.
*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21
*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 09523։ Պատվեր 344։ Տիրաժ 5000։ Տպագրական 2 1/4 մամուլ։ Ստորագրված է տպագրության 25/III—1954 թ.։*

*Գլխհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65։*



# ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

## Միքայել Նալբանդյան

Ազատություն — ահա այն վեհ գաղափարը, որ իր ստեղծագործություններում միշտ էլ երգել է հայ մեծ գրող, ռևոլյուցիոն-դեմոկրատ, հրապարակախոս Միքայել Նալբանդյանը: Նա գտնում էր, որ բոլոր ժողովուրդները պետք է ազատ և իրավահավասար լինեն:



Նալբանդյանը ծնվել է 1829 թվականին Նոր Նախիջևանում: Դեռևս երիտասարդ հասակում ընդհարվելով տեղի հայ հարուստների և հոգևորականների հետ, 1853 թվականին նա գնում է Մոսկվա: Այստեղ, նա ծանոթանում է ռուս ռևոլյուցիոն դեմոկրատների գաղափարներին և կրում նրանց բարերար ազդեցությունը: Նա ռևոլյուցիոն-դեմոկրատ էր և խոշոր հասարակական գործիչ: Նալբանդյանը «Հյուսիսափայլ» ամսագրում տպագրում է իր «Հիշատակարանը», «Մեռելահարցուկ» վեպը, բանաստեղծությունները: Դրանից բացի խոշոր դեր են կատարել «Երկրագործությունը որպես ուղիղ ճանապարհ», «Երկու տող» և ուրիշ գործեր: Դրանք մեծ նշանակություն ունեցան հայ նոր գրականության և հասարակական մտքի զարգացման մեջ:

1859 թվականին Նալբանդյանը գնում է արտասահման: 1862 թվականին նա վերադառնում է Ռուսաստան, նրան ձերբակալում են ռևոլյուցիոն գործերի համար և ուղարկում Պետրոպավլովսկի բանտը:

1866 թվականի մարտի 31-ին Նալբանդյանը մեռնում է աքսորավայրում՝ Կամիշին քաղաքում:

## Ա. Ս. Մակարենկո

«Ամենակարևորը, որ մենք սովորել ենք գնահատել մարդու մեջ—դա ուժն է, գեղեցկությունը»— այսպես է գրել սովետական մեծ մանկավարժ Մակարենկոն:

Անտոն Սեմյոնովիչ Մակարենկոն զբաղվել է մարդու կոմունիստական դաստիարակության հարցերով: Նա երկար տարիներ աշխատել է մանկական գաղութում: Դժվար պայմաններում էլ Մակարենկոն կարողանում էր վերադաստիարակել հակահասարակական արարքներ կատարած մարդկանց: Այդպիսի մարդկանցից նա ստեղծում էր մտերիմ, բարեկամական կոլեկտիվ: Դրանցից շատերը կյանք էին մտնում որպես բժիշկներ, ինժեներներ, Սովետական Բանակի հրամանատարներ: Իր հայտնի «Մանկավարժական պոեմ» գրքում նա ցույց է տալիս, թե ինչպես աշխատանքի միջոցով փոխադարձ վստահության պայմաններում վերադաստիարակվում են գաղութի սաները:



Մակարենկոյի ծառայությունն այն է, որ նա հասարակ օրինակի հիման վրա կարողանում էր մեծ ուժով ցույց տալ սովետական մարդու բնավորության նոր գծերը և այն ուժը, որը դաստիարակում է այդպիսի բնավորություն:

Այս տարի լրացավ Մակարենկոյի մահվան տասնհինգ տարին:

## Ջորջ Գորդոն Բայրոն

*(Մահվան 130-ամյակը)*

1802 թվականն էր... Անգլիայի դպրոցներից մեկում սովորում էր մի պատանի:

Ընկերները երբեմն հավաքվում էին և լուռ լսում պատանուն: Նա արտասանում էր իր հենց նոր գրած փոքրիկ բանաստեղծությունը:

Այդ պատանին Ջորջ Գորդոն Բայրոնն էր...

Երբ Ջորջն արդեն 18 տարեկան էր, տպագրության հանձնեց իր բանաստեղծությունների առաջին փոքրիկ ժողովածուն: Իսկ 1807 թվականին լույս է տեսնում նույն գրքի երրորդ փոփոխված հրատարակությունը՝ «Ազատ ժամերին» վերնագրով:



Բայրոնի առաջին ստեղծագործությունները մեծ փառքի արժանացրին նրան: Բայց դրա հետ միաժամանակ այդ ստեղծագործությունները առաջ բերեցին ամենաբչնամական ու կծու քննադատություն նրա հասցեին: Նա ստիպված փախավ Անգլիայից: Բայրոնը համարյա իր ողջ կյանքը անցկացրեց Իտալիայում և եվրոպական ուրիշ երկրներում: Վենետիկում եղած ժամանակ նա մոտ երկու տարի ուսումնասիրել է նաև հայոց լեզուն:

Իտալիայում նա մտերմանում է այն ժամանակվա իտալական ռևոլյուցիոներների՝ կարբոնարների հետ:

Թյուրքական ճնշման դեմ հույների ապստամբության ժամանակ նա գնում է Հունաստան և դառնում հույն ժողովրդի պայքարի մասնակիցներից մեկը: Այնտեղ էլ նա մեռավ 1824 թվականի ապրիլի 19-ին:

Բայրոնը գրել է «Չայլդ Հարոլդը», «Դոն Ժուանը», «Շիլիոնի կալանավորը», «Մանֆրեդը» և ուրիշ շատ գործեր:

Նա նկարագրել է մարդկանց, որոնք դժգոհ են եղել այն ժամանակվա կարգերից: Բայրոնի գրական ստեղծագործությունները մեծ ազդեցություն են թողել համաշխարհային գրականության վրա: Նրա գործերից շատերը թարգմանված են աշխարհի տարբեր լեզուներով, այդ թվում նաև հայերեն:

